# Մի անգամ, ձմռանը

*ՄՆԱՑԱԿԱՆ ԹԱՐՅԱՆ*

ԳՈՐԿԱՅՈՒՄ ՁՅՈՒՆՆ Է ԻՋՆՈՒՄ ՄԵՂՄ, ՀԱՆԳԻՍՏ,
ԱՄԵՆ ԵՐԿՆՔՈՒՄ ԱԼՅՈՒՐ ԵՆ ՄԱՂՈՒՄ,
ԻՍԿ ՄԱՆՈՒԿՆԵՐԸ ԱՆՀՈԳ ՈՒ ԱՆՎԻՇՏ
ՁՆԱԳՆԴԻ ԵՆ ՊԱՐՏԵԶՈՒՄ ԽԱՂՈՒՄ։

ԿԱՆՉՈՒՄ ԵՆ, ՀՐՈՒՄ ՆՐԱՆՔ ՄԵԿՄԵԿՈՒ,
ՊԱՐՏԵԶՆ Է ԼՑՎԵԼ ԶՆԳՈՒՆ ԾԻԾԱՂՈՎ,
ՇՐՋԱՊԱՏԱԾ ՄԻ ԿԱՐՃՄՈՐՈՒՍ ՄԱՐԴՈՒ,
ԽԱՂՈՒՄ ԵՆ, ԽՓՈՒՄ ՁՆԱԳՆԴԻԿՈՎ։

ԵՎ ՄԱՐԴԸ ՓԱՓՈՒԿ ՁՆԱԳՈՒՆԴ ՁԵՌՔԻՆ
ՄԵԿ ՊԱՇՏՊԱՆՎՈՒՄ Է, ՄԵԿ
ԷԼ ՀԱՐՁԱԿՎՈՒՄ,
ՈԳԵՎՈՐՈՒՄ Է ԽԱՂԸՆԿԵՐՆԵՐԻՆ,
ԻՆՔՆ ԷԼ ՆՐԱՆՑ ՀԵՏ ՍՐՏԱՆՑ ԾԻԾԱՂՈՒՄ։

— ԱՅԴ Ի՞ՆՉ ԵՔ ԱՆՈՒՄ, ՉԱՐԱՃՃԻՆԵ՛Ր,—
ՁԱՅՆ ՏՎԵՑ ՄԻ ԿԻՆ,— ԲԱ ՉԵ՛Ք ԱՄԱՉՈՒՄ,
ՄԻ՞ԹԵ ՊԱՊԻԿԸ ԽԱՂԸՆԿԵՐՆ Է ՁԵՐ,
ՈՐ ՄԵՋ ԵՔ ԱՌԵԼ՝ ԽՓՈՒՄ ԵՔ, ՓԱԽՉՈՒՄ...

ԱՍԱՑ, ԶԱՅՐՈՒՅԹՈՎ ՄՈՏԵՑԱՎ ՆՐԱՆՑ,
ԵՐԵԽԱՆԵՐԸ ՑՐՎԵՑԻՆ ԻՍԿՈՒՅՆ։
ԿԻՆԸ ԶԱՐՄԱՑԱՎ, ԵՐԲ ՏԵՍԱՎ ՀԱՆԿԱՐԾ
ԺՊՏՈՒՆ ԼԵՆԻՆԻՆ՝ ՁՆԱԳՈՒՆԴ ՁԵՌՔՈՒՄ։

-- ՆԵՐԵՑԵ՛Ք, ՏԻԿԻ՛Ն, ԼԱՎ ԲԱՆ ՉԱՐԵՑԻՔ,—
ԱՍԱՑ ԼԵՆԻՆԸ՝ ԹԱՓ ՏԱԼՈՎ ՁՅՈՒՆԸ,—
ԻԶՈՒՐ, ՇԱՏ ԻԶՈՒՐ ՄԵՋ ԽԱՆԳԱՐԵՑԻՔ՝
ԴՈՒՔ ԸՆԴՀԱՏԵՑԻՔ ՄԵՐ ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆԸ...



# ՎԵՐՋԱՊԵՍ ԵՍ ԴՊՐՈՑ ԵՄ ԳՆՈՒՄ

*ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ*

## ԱՆԾԱՆՈԹ ՄԻՋԱՎԱՅՐԻ ԱՆԱԽՈՐԺ ՀՈՏԵՐԸ

Ա՜խ, երանի թե մեր դպրոցը, ուր մեծ մուրազով ընդունվեցի, ոչ թե Դիլիջանի ձորի մեջ լիներ, այլ թեկուզ ավելի հեռու՝ է՜ն վերևում մուգ կանաչին տվող Ծամուտում կամ նրանից էլ դենը՝ Մորմոնջի կալում: Թեկուզ Մարանասարում լիներ, միայն թե հեռու լիներ քաղաքից, քաղաքի ժխորից, քաղաքի հոտերից: Ինձ անսովոր, ինձ համար անտանելի հոտերից:

Մաքո՜ւր-մաքուր բնությունից իջել եմ այս փոսն ու մինչև դպրոց հասնելը, տես ի՜նչ եմ քաշելու:

Կոռ Գեղամի կոշկակարական արհեստանոցի առջևով եմ անցնում, և նրա բաց դռնից դուրս է հորդում (այո՛, ինձ թվում է, թե հորդում է և ես տեսնում եմ նրա անտեսանելի հոսանքը...) կաշվի հոտը, դաբաղի հոտը, ներբանի հոտը, շևրո, յուղտ, խըրոմ և զամշ կոչվող կոշիկի երեսացու կաշիների հոտերն առանձին-առանձին: Եվ, մանավանդ տաշտի մեջ թըրջոց դրած կարկատելու հին կոշիկների հոտը:

Կոռ Գեղամի դուքանից այն կողմ ակը կապող Հարությունի արհեստանոցն է, ուր քը՛ռ հա բը՛ռ, բը՛ռ հա

բ՛ըն, փչում է փուքսն ու կրակը բոր-բոքում, ալավլամիշ անում: Ու երբ ուստա Հարությունը մի բուռ ածուխի մանրուքի հետ կես բուռ ծծումբ է լըց-նում օջախը, պիտի փակես քթածա-կերդ ու արագ անցնես, թե չէ այդ կը-ծու և խեղդող հոտը խուժելու է քիթդ ու վառելու է թե՛ նրա արմատը, թե՛ շնչափողդ:

Հասար Մատինովների աղբյուրին, ուզում ես կռանալ խմես, բայց ներ-քևում, լճացած առվի մեջ, լվացքա-ջրերի ու մոտիկ ճաշարանի աղբաջրի մեջ բադեր են քութուք անում: Ու մու-րազի նման ես հիշում Չութ-քարի աղ-բյուրը, որի սառն ու զուլալ ջրերից է գոյանում մեր Արխաշանա գետակը: Անց կաց, սա խմելու բան չի... Մանա-վանդ որ կառքը գալիս է փոշի բարձ-րացնելով: Այդտեղ ևս պիտի քիթդ բռնես...

Հենց մեր Դզերից իջնում եմ այս ձորը, շունչս բռնվում է:

Ինձ հասկանալու համար իմ ման-կությունը պիտի ապրած լինեք: Պիտի իմանաք, որ տավարածի համար ըր-մակում մեկնված փտող ծառի հոտը ավելի դուրեկան է ու հարազատ, քան... չգիտեմ ինչի հետ համեմատեմ, որ լավ լինի: Բա ծառասունկի հոտից մարդ կկշտանա՞: Բա փտող խաշա-մի հոտը «օխայ» անելով ներս չի ըը-ծի՞: Տեսնու՞մ եք, որ ես դիտմամբ բնության ամենասանդուր հոտերն եմ օրինակ բերում: Ես մեջտեղ չեմ բե-րում մեր սարերի անթիվ-անհամար, բազմերանգ - բազմահոտ ծաղիկների բույրերը, որովհետև դա, առանց իմ ասելու էլ, հասկանալի է բոլորին: Բայց արդյոք ձեզ բոլորիդ էլ հասկա-նալի՞ է, որ անձրևը հոտ ունի և այն էլ՝ դուրեկան հոտ: Իսկ հորդառատ անձրևից հետո, երբ հանկարծ արևը դուրս է գալիս ամպի տակից, զգացե՞լ եք (կամ՝ կարո՞ղ եք զգալ),թե ինչ դուրեկան բույրեր են արձակում սև ցելերը, անձրևից ծեծված ճամփան, որ քիչ առաջ փոշոտ էր: Ու առհասա-րակ շրջապատդ, մթնոլորտը, երկիրը, ողջ բնությունը հագենում է օղնի այն-քան դուրեկան հոտով, որ եղնիկի նման քիթդ վեր ցցած՝ հոտոտում ես, հոտոտում ու չես կշտանում:

Նույնիսկ ծառերն ու նրանց տերև-ները տարբեր բույրեր ունեն: Դանա-կով քչփորել եմ իմ ծննդավայրի բոլոր ծառատեսակների բները և նրանց կե-ղևից տարբեր բույրեր եմ առել: Նույն-իսկ նրանց տակով անցնող ավշանյու-թերը տարբեր հոտեր ունեն:

Բնության մեջ կարծես թե հոտը, ձայնը, գույնը և հազար ու մի այլ բա-ներ հանդես են գալիս իրար հետ, իրար ծուլված, իրարից անբաժան: Ի-րարից բխող, իրար պայմանավորող:

Ահա օրինակ, աշնանը մեր Անդար-կուտի կողմից փչեց հյուսիսի ուժեղ հողմը: Ի՞նչ բերեց իր հետ: Բերեց դեղ-նած խալավոր տերևներ՝ երամ առ ե-րամ, և բերեց նրանց խղճալի սվսվոցը (ախր. իրենց մայրերից բաժանված գնում են մահանալու...) Եվ բերեց նաև հենց այդ տերևներին հատուկ հոտը՝ խառնած անտառի խորքից ե-կող այլ հոտերի և, առաջին հերթին, ձմռան շեմին կանգնած հաճարենու հոտին: Այդտեղ քամու ՛նվագը, տե-րևների սվսվոցը ու դրանց հետ կապ-ված այլ երևույթները այնպես են շաղկապված իրար, որ անջատել իրարից չես կարող:

Դուք որ լինում եք կենդանաբանա-կան այգում, կարծում եք իրենց բնա-կան միջավայրից կտրված եղնիկներն ու քարայծերը մե՞ծ հաճույք են զգում ձեզնից բուրող հոտերից: Ես համոզ-ված եմ, որ նրանց տհաճություն է պատճառում նույնիսկ ձեր հագուս-տին, դեմքին ու մազերին փչած ա-մենաթանկ և ամենադուրեկան հոտ ունեցող օծանելիքը:

Այդպիսին էլ ես էի, երբ սկսեցի հաճախել Դիլիջանի ծխական դպրոցը: Բայց այն միտքը, որ շարունակելու եմ ընդհատված ուսումս, թևավորում էր ինձ և համբերություն տալիս տանելու այն, ինչ այն ժամանակ համարում էի անտանելի: Իսկապես որ տեղին էր մեր ամենօրյա աշակերտական աղոթքը՝

Տուր մեզ ուժ և կարողություն՝
Այս ուսումը շարունակելու...

Այս նշանաքան-խոսքից հետո ընթերցողիս հաղորդեմ, որ վերջապես մուրազս կատարվել է. ես Դիլիջանի ծխական դպրոցի չորրորդ բաժանմունքի աշակերտ եմ: Եվ հիմա ուզում եմ հակիրճ տեղեկություններ տալ գյուղաքաղաքի իմ նոր ընկերների մասին:

## ՀԱՄԻԿ ՄԱՏԻՆՅԱՆ

Դեմքը կլորիկ-փափլիկ է, ոնց որ բուլկի: Մաշկը ճերմակ է, փոքրիկ բոխախը՝ գեղեցիկ: Հագուստները ընտիր են, մաքուր: Ինքը լուրջ է, և ես նրա դեմքին ժպիտ չտեսա: Գուցե այն պատճառով, որ դժգոհ էր, դպրոցի վարիչ Ստեփան Մամյանը ինձ այդ փոքրիկ ազնվականուհու մոտ էր նստեցրել, իմ չարաճճիությունները զսպելու համար: Խելոք բան էր արել. զանազան բուրմունքներ արձակող նրա հագուստի մոտ, ես ուղղակի անշարժ մեխված էի նստարանին: Եվ, մանավանդ, աշխատում էի նստարանի տակ թաքցնել կոպիտ տրեխներս, որ անձրևոտ օրերին թաց էին լինում, իսկ չոր եղանակին կուչ էին գալիս, սեղմում պճեղներս:

Այդ արարածից քաշվելուս մի պատճառն էլ այն էր, որ մեր տետրակների վրա սիրուն տառերով տպված էր՝ «Մատինյանց և ընկ.»:

Այնքան էի կաշկանդված զգում ինձ, որ անուշադիր էի դարձել: Գրատախտակի վրա խնդիրներ են լուծում, իսկ իմ ամբողջ հոգսն այն է, թե ինչպես շարժվեմ, որ չկպչեմ ընկերուհուս հագուստին կամ թևին:

Ուսուցիչներս նկատում էին իմ վիճակը, ուստի Ստեփան Մամյանը մի անգամ բռնացրեց.

— Ստեփա՛ն Անանյան, ի՞նչ խնդիր են լուծում գրատախտակի վրա:

Է, գրատախտակին նայե՞լ եմ, որ իմանամ: Կամ որ նայել եմ, բան հասկացե՞լ եմ, թե այնտեղ կավիճով ինչ է գրում իմ ընկեր Գևորգը:

Ստեփան Մամյանը մոտեցավ ինձ, բռնեց ղարիկ բազուկիցս ու տարավ նստեցրեց Վանուշի մոտ:

— Բոի մեծացել ես, բոի ընկերներիդ հետ քեզ լավ կզգաս... Էշն ինչ իմանա նուշն ինչ է...

Այսպես կոպիտ էր դպրոցի ավագ ուսուցիչ Մամյանը: Զնայած ինձ այսպիսի վիրավորական խոսքով տեղափոխեց, ես գոհ մնացի, քանի որ նոր ընկերս իմ սրտովն էր. ապրում էր Գոլովինոյի մոտերքում, ծառերի մեջ կորած մի մենավոր խրճիթում: Կարծեմ մի քանի ոչխար ունեին և մեկ կով, որոնց խնամքը դրված էր իր վրա:

## ՎԱՆՈՒՇԸ

Մոտիկից նայենք այդ տղային: Գըլուխը խոշոր է, խոսում է դանդաղ, հաստատուն և համառ: Նրա մոտ ես միանգամից ազատագրվեցի ինձ կաշկանդող կապերից: Մոտենում էլ էինք, իրար հրում էլ էինք, իրար ոտք էլ էինք տրորում, և մեր բերած աղքատիկ նախաճաշը ուտում էինք միասին:

Ափսոս, որ իմ ընկերությունը Վանուշի հետ շատ երկար չտևեց: Տարվա կեսին մի օր նկարչության դասատուն մի արկղ ներկեր բերեց, որոնք քառակուսի կոճակների նման կպցված էին

գեղեցիկ ձևավորված ստվարաթղթին։ Ի՜նչ սիրուն ներկեր էին։ Իր ապրանքը ցուցադրելու նպատակով, գրատախտակին մի թուղթ փակցրեց, վրձինը թաթախեց ջրի մեջ ու այդ գույներից մեկիկ-մեկիկ քսեց։ Այն ի՜նչ չպլպուտուրիկ թռչուն ստացվե՜ց, վերևն էլ ծիածանը իր յոթ գույներով. և թվում էր թռչունը հիմա ճախրելով կանցնի ծիածանի տակով ու կգնա հեռո՜ւ, երկնի լազուրը։

— Երեխանե՛ր, սրանք բերել եմ ձեզ համար։ Վերցրե՛ք և վաղը հետներդ կբերե՛ք գինը՝ մեկ ռուբլի քսան կոպեկ,— ասաց ուսուցիչը։

— Թանկ է,— տեղից փնթփնթաց Վանուշը։

Ես անհարմարությունից գլուխս կախեցի։

— Թանկ չի, երեխանե՛ր, յուրաքանչյուր գույնն արժե քսան կոպեկ։ Այստեղ վեց գույն է...

— Վարժապե՛տ,— տեղից վեր կենալով և խոշոր գլուխը տմբտմբացնելով, համարձակ սկսեց Վանուշը։— Ձեր էդ ծտի-պտի կոճակները մի թոխլու գին է... ես ոչ դրանք կառնեմ, ոչ էլ նկարչություն կսովորեմ։ Մի երկու թոխլի ունենք, հացի ենք տալու... նկարչությունից առաջ մեզ հաց է պետք։

Անհարմար դրություն ստեղծվեց։ Շատերս էինք դատապարտում Վանուշի հանդուգն ելույթը, բայց կային նաև պաշտպաններ։

— Հիվանդ մորը հազիվ է պահում, էդ գնով նա ո՞նց ներկեր առնի...

Բայց միայն ներկը չէր, այն ժամանակ գրենական պիտույքները ներկայիս համեմատությամբ տասնապատիկքսանապատիկ թանկ էին։ Հասարակ գրչածայրն ինչ էր, որ 3 կոպեկ արժեր, այսինքն՝ երեք ձվի գին։ Իսկ երբ գարնանամտին մեզնից պահանջեցին նաև ուսման վարձը՝ 5 ռուբլի ոսկով, Վանուշը գրքերը տեղավորեց իր հին տոպրակի մեջ, վեր կացավ և զուսպ վրդովմունքով ասաց.

— Մնաք բարի, ես գնացի... Ուսումը ինձ նմանների համար չի, սրանց համար է, ա՞յ...

Եվ մատով մեկ-մեկ ցույց տվեց խանութպանների երեխաներին, չըխնայելով անգամ իմ «ազնվազարմ» ընկերուհուն՝ Հասմիկ Մատինյանին։

Դասարանում աղմուկ բարձրացավ, վիրավորվածները քրթմնջացին, շըվացրին, իսկ Հասմիկի եղբայր Ամասիան շպրտեց.

— Ուսման պատիվը դու չգիտես։ Գնա չոբանությու՜ն արա...

Վանուշը ձեռքն արհամարհանքով թափ տվեց և խոշոր գլուխը ճոճելով տխուր դուրս գնաց։

Այդ օրվանից ես չեմ տեսել Վանուշին և ոչ մի տեղեկություն չունեմ նրա մասին։

Յարաբ ու՞ր տարավ նրան իր ճակատագիրը...

## ՄԱՅՄԵԽ ՀՐԱՉԻԿԸ

Բարակ, սլացիկ բոյով, շիկավուն ու դուրեկան դեմքով պատանի էր, որ նստում էր իմ առջևի նստարանին։ Նրա վզի ոսկեգույն աղվամազը շարունակ աչքիս առաջ էր։ Հրաչիկ էր անունը, բայց ընկերները Մայմեխ էին կանչում, որովհետև «մայմեխ* ընկած» արջառի նման էր քայլում։ Երեխա ժամանակ ինչ-որ հիվանդություն էր տարել և դրանից քայլելիս ոչ թե կաղում, այլ մարմնի ծանրությունը գցում էր մեկ մի ոտի, մեկ մյուս ոտի վրա և այդպես ընթանում էր օրորվելով։

* Եզները պայտելիս երբեմն սխալմամբ մեխը խրվում էր խորը՝ կճղակի մսի մեջ, որից և լծկանը «մայմեխ» էր լինում (մայա և մեխ բառերից)։

Դրանից էր, որ Հրաչիկը չէր մասնակցում մեր թունդ խաղերին, չէր վազվզում, բայց նրա բախտից իր հոր խանութը մոտիկ էր, դպրոցի դիմաց, ճամփի մյուս եզրին: Մեծ դասամիջոցին ոտքերը քարշ տալով հասնում էր խանութ, գրպանը լցնում չոր մրգերով՝ ընկույզ, պնդուկ, չամիչ և ծամելով ետ էր գալիս: Մինչև հասնում էր դպրոցի բակը՝ պաշարը սպառվում էր: Պատահում էր, որ չամչով լիքը բուռը դեմ էր անում ինձ.

— Վերցրո՛ւ...

Իսկի կվերցնե՞մ որ: Ամոթից կարմրատակում էի ու հեռանում: Մի անգամ էլ, երբ Հրաչիկը բարեսրտորեն միրգ առաջարկեց ինձ, մեր մոտով քաջքաքամու նման անցնում էր մեր դասարանի ամենաշաղլատան տղան՝ Ասքանազը:

— Էդ սարեցին չամչի պատիվն ի՞նչ գիտի,— ասաց, բազեի նման վրա տըվեց, չմփեց-փախցրեց ինձ առաջարկված միրգը: Իսկ Հրաչիկը նայում էր հետևից ու ներողամտորեն գլուխն օրորում:

— Ասա որ շնորհքով ուզես՝ կըմերժե՞մ... Ինչի՞ ես փախցնում...

## ՔԱՋՔԱՔԱՄԻ ԱՍՔԱՆԱԶԸ

Ինձ զարմացրել էր Ասքանազի աչարքը: Ո՞նց կարելի է ճանկել-վերցնել այն, ինչ չեն ուզում տալ քեզ: Առհասարակ զարմանում էի, թե որքան ազատ են իրենց պահում այս քաղաքի տղաները: Ազատ, նույնիսկ երեսով, առանց քաշվելու, առանց ամոթի: Ափսոս չէ՞ին մեր գյուղի պատանիները՝ ամոթ ունեին, կարմրել գիտեին: Տարբերությունը այս խանութպանների, փռնչիների, բարձր արհեստավորների, չինովնիկների երեխաների ու մեր միջև այնքան մեծ էր և նրանց վարքը այնպես խորթ էր մեզ, որ կո՛ւլտուրապես ցած լինելով նրանցից, մեր մտքում արհամարհանքով էինք նայում նրանց. «Պիժոններ են, դրանցից մարդ չի դուրս գա...» Մեր աչքում նրանք արհամարհանքի էին արժանի հատկապես այն պատճառով, որ արդեն մեծ-մեծ տղաներ լինելով, չէին աշխատում և աչքները իրենց հոր գրպանին էր: Դա մեծ պակասություն էինք համարում, որովհետև ինքներս փոքր հասակից աշխատավորներ էինք:

Ահա դրանցից մեկը՝ Ասքանազը: Աննոգ, ուրախ, վշտից ու ընտանեկան հոգսից ազատ: Հենց որ զանգը տալիս են, դուրս է պրծնում դասարանից, սրա գլխին բամփում, մյուսին ոտ գցում տապալում, երրորդի վզին թունդգքով հարվածում, թե՝ «Քյալամ եմ կտրում...» ու տրտնգի տալով՝ փախչում է ջահել քուռակի նման: Մինչև օրս էլ մտքիս մեջ Ասքանազը իր երկար ու ջլապինդ ոտներով քաջքաքամու նման վազում է դպրոցի բակում, սրան-նրան հրմշտելով, հարվածելով, քացի խփելով:

Իսկ դասարանի ներսո՞ւմ: Թվաբանության դասին անմեղ գառն էր, որովհետև մի քանի անգամ առել էր վիթխարահասակ Ստեփան Մամյանի բռունցքի համը: Աշխարհագրության դասին սեղանի տակով ոտքը հասցընում էր իմ ընկեր Գևորգի ոտքին ու կամ տրորում, կամ քացի տալիս: Մոտիկ նստած աղջիկներին հո օր չէր տալիս: Այն ժամանակ աղջիկները իրենց մազերը կտրելու սովորություն չունեին և նրանց խնամքով արված հյուսքերը առանձին շքեղություն էին պարգևում օրիորդ դառնալու պատրաստվող այդ արարածներին: Այդ հանգամանքը մեծ դյուրություն էր տալիս Ասքանազին. ձեռքին փաթաթում էր հյուսքերից մեկն ու ձիգ տալիս:

— Վարժապետ, զայե՞ք այս վայրենուն,— պատահում էր, որ ցավից լացակումած աղջիկը հենց այդպես էլ կոպիտ ճչում էր։

Իսկ թե ինչ էր դնում մեր ուսուցչուհի օրիորդ Դեղձանիկի գլխին, պատմելու չի։ Հազիվ տասնյոթը լրացած, փոքր կրթությամբ (չգիտեմ 5-րդ դասընթացն էր վերջացրել, թե՞ 7-րդը) փոքր մարմնով, դեղձանիկի նման դեղնած դեմքով մի աղջիկ էր օր. Դեղձանիկը։ Ուժ չուներ, հեղինակություն չուներ, իսկ Ասքանազը աղմըկելուց բացի, նույնիսկ ուսուցչուհու տնազն էր անում։ Պատահել է, որ խեղճ Դեղձանիկը լալով դուրս է գընացել դասարանից և հետը բերել Ստեփան Մամյանին մեզ զսպելու։

— Ասքանա՛զ Գրիգորյան, մո՛տ արի,— որոտում էր նա՝ ծանր քանոնը վերցնելով...

Շատ տարիներ անց լսեցի, որ լավ մարդ և լավ աշխատավոր է դառել իմ շառլատան ընկեր Ասքանազը։ Մեր դպրոցական տարիներից գրեթե կես դար անց հանդիպեցինք մեր տանը, բայց քանի որ այն տաս-տասնըմեկ տարեկան երեխաների փոխարեն այժմ երկու ծերունիներ էին կանգնած իրար դիմաց, ոչ մեկս մյուսին չճանաչեց։

Իրար խոսեցնում ենք։

— Մեր դպրոցում մի նիհար տղա կար, երեսը՝ երկար, ոտքերը՝ երկար, քամու նման վժժալով սուրում էր ու պատահողին տապալում... Կարո՞ղ է պատահել, որ էն շառլատանը դու ես եղել։

Ծիծաղեց տխուր ու մելամաղձոտ։

— Այո, էն շառլատանը ես էի, Ասքանազը... Բա քեզ ո՞նց ճանաչեմ, ախր մեր դասարանում Վախթանգ անունով տղա չկար...

— Իսկ Ստեփան անունով կա՞ր... Որ գյուղից էր գալիս և ուշանալու համար էլ մեկ-մեկ քոթակ ուտում։

— Կար, իհարկե, կար... հլա մի աչքն էլ շիլ էր,— հուշերից զվարթացավ Ասքանազը։

— Էն աչքը շիլ Ստեփանը ես եմ...

Տեղից վեր թռավ, որ գրկի, բայց տատանվեց. զարմացած էր...

«Ո՞նց թե...»

— Բա հիմի ինչի՞ չի աչքդ շիլ։

— Արհեստավորներին դզել եմ տըվել։

— Այ քեզ բա՜ն, հո հանաք չե՞ս անում,— շփվարեց իմ զրուցակիցը։— Ախր ո՛չ անունդ է նույնը, ո՛չ աչքդ, ո՛չ էլ... համբավդ։ Այ քեզ բա՛ն։ Ուրեմն, էն քո՛ գրվածքներն եմ կարդու՞մ։

Լուռ ու անձայն ծիծաղում եմ։

— Ուրեմն էն աչքը շիլ Ստեփան Անանյանը դու ես եղե՞լ։

Շարունակում եմ ժպտալ։

— Ուրեմն քեզ էի քացի տալիս ու փախչու՞մ... Որ իմանայի գրող ես դառնալու, բա էդ ղալաթը կանեի՞ որ...

— Է՜է՛, Ասքանա՛զ ջան,— զգացված ասացի,— երանի չէ՞ր, որ էլի էն տարիքին լինեինք, էլի ինձ քացի տայիր ու դունչդ քամուն տված տրտինգ տայիր դպրոցի բակում... Բարձրացրո՛ւ, բաժա՛կդ բարձրացրու, էն ուրի՛շ բան էր, է՜... Աշխարհքով մեկ անուն էլ հանես, նրա քաղցրությանը չի հասնի... Բաժա՛կդ բարձրացրու...

*(Շարունակելի)*



Անահիտ Առուստամյանը, որի «Մայրիկիս» բանաստեղծությունը տպագրվել է մեր ամսագրի 1977 թվականի 3-րդ համարում, վերջերս խմբագրություն բերեց իր նոր բանաստեղծությունները:

Անահիտն այժմ սովորում է № 130 դպրոցի 10-րդ դասարանում:

Տպագրում ենք նրա նոր բանաստեղծություններից երեքը, որոնք, խմբագրության կարծիքով, սկսնակ բանաստեղծուհու հնկատելի առաջխաղացման վկայություններն են:

* * *

Ես զբաղվելու համար փորձեցի
Հյուսել սովորել,
Որ ժամանակս իզուր չկորցնեմ
Միտքս վատնելով իմ իսկ հույզերին,
Ու ես ցանկացա մի ժանյակ հյուսել,
Այն էլ խճճված թելի կծիկից...
Հարթ կծիկները հանգույցներ չունեն՝
Արագ են քանդվում ու արագ
հյուսվում...
Իմ թելերը դեռ ժանյակ չեն դարձել,
Դեռ հանգույցներ եմ հարթում ու
հարթում,
Բայց ժամանակս սահում է անտես,
Իմ զբաղմունքին ասես անտարբեր...
Ոչինչ, այդքան էլ պետք չեն ինձ
ժամեր,
Այլ լոկ հյուսելու այն ակնթարթը,
Որ խճճվում է ժամանակի մեջ,
Ինչպես թելերը շյուղերիս վրա:

* * *

Եթե հանկարծ կյանքը փորձի
Ինձնից ձուլել մի այլ էակ,
Ու իմ դեմքը կողոպտելով
Փոխարենը տա ինձ դիմակ,
Ես կզատեմ ինձնից ոգիս,
Որ չհյուծվի, չտառապի,
Մեկ է, գիտեմ, նա չի սաստվի...
Ես արյանս կաթիլները
Որպես սոսինձ կօգտագործեմ
Եվ իմ ոգին կփակցնեմ
Մի շատ բարձր, բարձր սյունի
Ու կդառնա նա փաստաթուղթ
Իմ գոյության անձի մասին:
Եվ թե հանկարծ կյանքը զգա,
Որ իմ ոգին պետք է իրեն,
Եվ թե հանկարծ կյանքը տեսնի,
Որ ապրել եմ ես ինձ լքած,
Օ՜հ, ինչ կանի կյանքը այդժամ,
Գուցե ոչի՞նչ, նա կլռի՞...
Ո՛չ, չե՛մ ուզում այդպես լինի:
Ո՛չ, ես դիմակ չե՛մ ընդունի:

* * *

Հանկարծ երազիս արևը իջավ
Ու նստեց ուսիս,
Ես նրան գրկած,
Չգիտեմ ինչու՝ մտա մի շուկա:
Մտա՝ նայեցի անթիվ իրերի,
Որ գնվում էին տարբեր գներով...
Ես փող չունեի գնելու համար
Եվ որոշեցի ինքս վաճառել,
Ու վաճառեցի... իմ արեգակը...
Տարօրինակ էր, ավա՜ղ, շուկան այդ,
Շատ թանկ իրերը գնվում էին էժան,
Իսկ էժանները՝ անչափ-անչափ թանկ:
Ու իմ արևը ծախվեց գրոշով,
Պատկերացնո՞ւմ եք՝ աղբյուրը կյանքի
Շուկայում դարձավ անշուք ու չնչին:
Ես չէի կարող ոչ մի կերպ ներել
Այդ անօրինակ կարգը շուկայի:
Եվ բախտս ժպտաց, որ շուտ
արթնացա
Այդ անարեգակ ու մութ երազից:

Արարատի շրջանի տարածքում են գտնվում պատմական Արտաշատ մայրաքաղաքը, 1650-ամյա Խոսրովի արգելանոցը, Խորվիրապ պատմական հուշարձանը: Շրջանի հարավարևմտյան կողմից հոսում է Արաքս գետը, իսկ հակադիր ափին սիգապանծ Արարատ լեռն է:

Այս շրջանի Սովետաշեն գյուղում է ծնվել մեր ժամանակի մեծագույն բանաստեղծներից՝ Պարույր Սևակը, որի ծննդյան 56 տարին բոլորում է այս ամսի 24-ին:

Ստորև տպագրված նյութերը պատմում են շրջանի տնտեսական ու կուլտուրական կյանքի, պիոներ-դպրոցականների աշխատանքների մասին:




# ԵՐԵԿ, ԱՅՍՕՐ, ՎԱՂԸ



*ՀԵՆՐԻԿ ՄԻՆԱՍՅԱՆ*
*ՀԿԿ Արարատի շրջկոմի առաջին քարտուղար*

Մայր Արաքսի ափերից մինչև Գեղամա լեռնաշղթան է հասնում շրջանի տարածքը և մեծությամբ զիջում է միայն Սիսիանին: Սակայն առայժմ նրա հողատարածության միայն 12 տոկոսն է մշակվում:

Ինչպես ողջ Արարատյան հովտի, այնպես էլ Արարատի շրջանի համար ամենակարևորը ջուրն է: Նախատեսված է Վեդի գետի վրա ջրամբար կառուցել, ուր գարնանը կամբարվի 38 միլիոն խորանարդ մետր ջուր, որի շնորհիվ մշակովի հողերի յոթանասուն տոկոսից շրջանը տարեկան երկու բերք կստանա: Ջրի պակասության պատճառով այժմ հողերի միայն 15—20 տոկոսից է երկրորդ բերք ստացվում:

Երկրորդ և ոչ պակաս կարևոր խնդիրներից է նոր հողերի յուրացումն ու նոր տնտեսությունների ստեղծումը: Արդեն հիմնադրվել է Պարույր Սևակի անվան տնտեսությունը, որը շրջանի գյուղերից ամենաշատ՝ 1700 հեկ-

# ՀԱՅԱՑՔԻ ՆԵՐՔՈ



տար մշակովի հողատարածություն կունենա:

Երրորդ խնդիրը, որ ծառացած է շրջանի առջև, ամայի, անբերրի աղուտների յուրացումն է: Այդ հողերը ցանքերի համար պիտանի չեն, բայց չի նշանակում, թե անպետք են առհասարակ: Այդ տարածությունները հատկացվել են ձկնարդյունաբերությանը: Առայժմ միայն հարյուր հեկտարի վրա են լճեր ստեղծվել, իսկ եկող տարի ևս 200 հեկտար աղակալած հողեր կծածկվեն լճերով և տարեկան 1500 տոննա ձուկ կտան:

Հեղաշրջում է սպասվում նաև անասնապահության, թռչնաբուծության բնագավառում: Ջերմանիս բնակավայրի ամայի ու լքված հողերը հատկացվելու են ոչխարաբուծական ֆերմաների: Այժմ շրջանի բոլոր թռչնաբուծական ֆերմաները տարեկան տալիս են մոտ երեք միլիոն ձու, իսկ նորաստեղծ, տիպային ֆերման տարեկան կարտադրի 10—12 միլիոն ձու:

Մոտավորապես նույն հարաբերությամբ են հզորանալու նաև շրջանում ներկայումս գործող արդյունաբերական 22 ձեռնարկությունները: «Արարատ» հանքային ջրերի գործարանը այժմ տարեկան արտադրում է մոտ 45 միլիոն շիշ, վերակառուցվելուց հետո նրա հզորությունը կհասնի 150 միլիոն շշի:

Հատկապես գյուղատնտեսական աշխատանքներում զգալի է պիոներ-դպրոցականների օգնությունը: Գյուղատնտեսական աշխատանքների մոտ տասներկու տոկոսը նրանց ուժերով է կատարվում: Շրջանում գործում են շուրջ երեսուն աշակերտական արտադրական ու շինարարական բրի-

գաղներ: Եթե վերը նըշված տոկոսները վերածենք գումարի, ապա տարեկան մոտ չորս միլիոն ռուբլու աշխատանք են կատարում նրանք: Պակաս նշանակալից չէ նաև դպրոցական հողամասերից աշակերտների ստացած եկամուտը: Այդ փոքրիկ տարածությունների վրա պատանի բընասերների խմբակները և՛ փորձեր են դնում, և՛ ծառատեսակներ աճեցնում, և՛ առատ բերք ստանում: Վեդու № 1 դպրոցն անցյալ տարի 16 տոննա խնձոր ստացավ դպրոցամերձ հողամասից, իսկ Վանաշենի աշակերտները տարեկան 2000—2500 ռուբլու բերք են ստանում իրենց հողամասից...

Արարատի շրջանը 1977—78 թվականներին հաղթող ճանաչվեց համամիութենական սոցիալիստական մրցությունում և արտադրական բարձր ցուցանիշների համար արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ դրոշին:

Պիոներ-դպրոցականների ներդրումն այդ գործում արժանի է ամենայն գովասանքի:

# ՎԵԴՈՒ ՄԱՆԿԱԿԱՆ ԳԵՂԱՐՎԵՍՏԻ ԴՊՐՈՑԸ

Դպրոցում հպարտությամբ են խոսում «Մուկն ու կատուն» մուլտիպլիկացիոն կինոնկարի մասին: Այս կինոնկարի յուրօրինակ սցենարն ու նկարները ստեղծել են աշակերտները: Կինոնկարը սկսվում է այնտեղից, որտեղ վերջանում է Խնկո-Ապոր «Մկների ժողովը» բանաստեղծությունը, այսինքն՝ այն մասին է, թե ինչպիսի հնարամըտությամբ են մկները զանգը կախում կատվի պարանոցից: Ոգևորված առաջին մուլտիպլիկացիոն կինոնկարի հաջողությամբ (այն շատ էր դուր եկել նանկապարտեզի երեխաներին), Վեդու մանկական գեղարվեստի դպրոցի սաները ստեղծեցին «Աղվեսն ու աքաղա-



●

*ՄԵՍԱՔՍԵ ՀՈՎՍԵՓՅԱՆ, 12 տ.*





ՍԼԱՎԻԿ ՍԱՀԱԿՅԱՆ, 11 տ.

ղը։ Նոր մուլտիպլիկացիոն կինոնկարը, որի սցենարի հեղինակը Ալավերդյան Չինարն է՝ դպրոցի աշակերտներից։ Երկու մուլտիպլիկացիոն կինոնկարները էլ երեխաները նվիրել են մանկապարտեզին։

Վեդու մանկական գեղարվեստի դպրոցը հիմնադրվել է 1972 թվականին։ Ամեն տարի գեղարվեստի դպրոցի սաները 25—30 ցուցահանդեսներ են բացում շրջանի գյուղերում և դպրոցի ընդարձակ պատկերասրահում։ Նրանց աշխատանքները ցուցադրվել են 30 արտասահմանյան երկրներում։ Դպրոցի 60 շրջանավարտներից 30-ը ընդունվել են իրենց նախասիրած մասնագիտության բարձրագույն ուսումնական հաստատությունները և ուսումնարանները։





ՆՈՐԱՅՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ, 11 տ.

# ԱՅՑԵԼՈՒԹՅՈՒՆ ՊԱՐՈՒՅՐ ՍԵՎԱԿԻՆ



Բանաստեղծի առանձնատան ետևում բազալտից կառուցված տուն-թանգարանը գեղեցիկ շենք է, խոսուն արտահայտչաձևերով, որի հեղինակն է բանաստեղծի մտերիմներից՝ Երևան քաղաքի գլխավոր ճարտարապետ Ջիմ Թորոսյանը: Շենքի արտաքին տեսքից, անտեղյակ մարդն էլ կարող է կռահել, որ սա հոգևոր տուն է, հոգևոր օջախ: Թանգարանի դուռը փակ է:

Դեռևս չեն ավարտվել ներքին հարդարման աշխատանքները:

Առանձնատան առաջին հարկի փոքրիկ սենյակում նստած է բանաստեղծի մայրը՝ ձեռքերը ծնկին: Տիգրանը լուսանկարում է Անահիտ ազիի ձեռքերը, որ ասես ավելի արտահայտիչ են, քան դեմքը, հայացքը: Այսքան արտահայտիչ ձեռքեր չեմ հիշում, որ տեսած լինեմ: Անահիտ ազին լքված խրճիթի է նման ու խաբված երեխայի: Շատ էի ցանկանում հետը լուսանկարվել: Չմերժեց: Միևնույնն էր իր համար:



«Եկեք այսօր մենք համբուրենք որդիաբար,
Մեզ աշխարհում ծնած-սնած,
Մեզ աշխարհում շահած-պահած,
Մեզնից երբեք չկշտացած,
Փոշի սրբող, լվացք անող,
Անվերջ դատող, անվերջ բանող
Այս ձեռքերը,
Թող որ ճաքած ու կոշտացած,
Բայց մեզ համար մետաքսի պես
Խաս ձեռքերը...»

Համբուրում ու դուրս ենք գալիս տանից, այգուց, գյուղից: Դպրոցի մոտից անցնելիս հիշում եմ. «Ախար ես միջնակարգն ավարտեցի՝ այդպես էլ չիմանալով, թե ինչ բան է աթոռ և սեղան: Մորս հացի տախտակն էր իմ սեղանը... գրտնակն էր իմ քանոնը... խմորով էի թուղթ կպցնում»:

Գրքե՞րը...

«Գյուղից-գյուղ էինք գնում գիրք խնդրելու...»— գրում է Սնակը:

«Կյանքը չի բաժանում չարիք-բարիք,
Եվ մի՛ կարծիր իզուր,
Թե չքերեց բախտդ:
Բախտ բերելս որն է,
Նրան ձեռք են բերում...»

Կյանքում իր տեղը գտնելը գուցե թե ամենակարևորն է մարդու համար:

«Ես հոգնել եմ մանրաքաղաքային պաղ խոսքերից,
Լավ է լինել հմուտ դարբին, քան ոսկերիչ...»

1971 թվականի հունիսի 17-ին բանաստեղծն ու իր կինը՝ Նելլի Մեսաղարիշվիլին Ջերմուկ գնացող խճուղու վրա, Երասխավանից 8 կմ հեռու, զոհվեցին ավտովթարից:

Ամեն տարի այդ օրը՝ հունիսի 17-ը՝ Սովետաշենում նշվում է իբրև պոեզիայի օր: Պարույր Սևակի պոեզիայի երկրպագուները գալիս են Երևանից և հանրապետության տարբեր շրջաններից: Արտասանվում են բանաստեղծի ստեղծագործություններից: Լավագույն ասմունքողներին տրվում են մրցանակներ: Իրենց նոր բանաստեղծություններն են ընթերցում երիտասարդ բանաստեղծները:

*ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ*



# ՊԱՐՈՒՅՐԱՎԱՆԸ

Երասխավանից 8 կմ հեռու, ավտովթարի հուշաքարի մոտ տարածված խոպան հողերի վրա կառուցվում է այգեգործական նոր սովխոզ, որը կոչված է մեծ բանաստեղծի անունով՝ Պարույրավան: Պարույրավանը ունենալու է 1400 հեկտար խաղողի ու պտղատու այլ այգիներ, 570 հեկտար հացահատիկային ցանքատարածություններ և արոտավայրեր: Արդեն պատրաստ են Պարույրավանի առաջին բնակիչների ժամանակավոր կացարանները:

## ԹՎԵՐ, ՓԱՍՏԵՐ

● Արարատի շրջանը զբաղեցնում է 1400 քառակուսի կիլոմետր տարածություն: Բնակչության թիվը հասել է 71 հազարի:

● Շրջանն ունի 80 բընակավայր, որոնք ներկայացնում են 15 կոլեկտիվ և 9 պետական տնտեսություն:

● Շրջանում տարեկան արտադրվում է 45—47 հազար տոննա խաղող, 45—48 հազար տոննա բանջարեղեն, 4600 տոննա պտուղ:

● Նրա տարածքում է գտնվում հանրապետական ենթակայության Արարատ քաղաքը:

● Սովետական Հայաստանի առաջին խոշոր կառույցներից է ցեմենտի գործարանը, որի արտադրանքով են կառուցվել հանրապետության գրեթե բոլոր բնակելի շենքերը, դպրոցները, գործարաններն ու ֆաբրիկաները:

● Վերջերս շահագործման հանձնվեց և իր առաջին արտադրանքը տվեց ոսկու կորզիչ գործարանը...

● Այստեղ է գտնվում Խոսրովի արգելանոցը, որը զբաղեցնում է շըրջանի ընդհանուր տարածքի 14 տոկոսը:

## ԹՎԵՐ, ՓԱՍՏԵՐ

● Շրջանում տարեկան արտադրվում է 81—85 միլիոն ռուբլու գյուղատնտեսական և 110—115 միլիոն ռուբլու արդյունաբերական արտադրանք:

● Շրջանում գործում են 86 միջնակարգ և ութամյա դպրոց՝ 21 հազար աշակերտներով և 1800 ուսուցիչներով: Կան երաժշտական երկու, մարզական երկու և մեկ կերպարվեստի դպրոցներ:

● Ամենամեծ՝ Արարատ գյուղը 7 հազար բնակիչ ունի:

● Վերջին երեք տարում շրջանի 140 աշխատողներ արժանացել են ՍՍՀՄ շքանշանների և մեդալների, նրանցից չորսը պարգևատրվել են Լենինի շքանշանով:

Հինգ արարատցիներ արժանացել են սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման:

● Այստեղ աշխատում են հանրապետական վաստակավոր երեք գյուղատնտես, չորս շինարար, երեք բժիշկ, բժշկական գիտությունների մեկ դոկտոր, գիտությունների 20 թեկնածու:

● Հիվանդանոցներում և բուժկետերում աշխատում են 88 բժիշկ և 850 կրտսեր բուժաշխատող:

# «Շտապ օգնության» բրիգադը

Հարյուր հիսուներկու տարի առաջ հայ ժողովրդի մեծ բարեկամ Գրիբոյեդովը Պարսկաստան գնալիս անցել է Արարատի՝ նախկին Դավալուի միջով և իր ճամփորդական նոթատետրում գրել. «Անցնում ենք Դավալուի միջով... Երկու արագիլ հսկում են ամայացած գյուղը»: Այդ «ամայացած գյուղը» հիմա 7000 բնակիչ ունի, ամենամեծն է շրջանում և օր-օրի հզորանում, ծաղկում է Արարատների հայացքի ներքո:

Բլրի ստորոտից սկսվում է բանջարանոցը: Կանաչ թփերի միջից երևացող ողորկ ու փայլուն սմբուկը հեռվից նման է սև սաթի: Դպրոցական տարիքի մի խումբ պատանիներ ու աղջիկներ սրախոսելով ու կատակելով քաղում են բերքը, լցնում պարկերն ու գոգնոցները: Անցյալ տարվա շրջանավարտներից և երեկոյան դպրոցներում սովորող բարձր դասարանցիներից կազմված «Շտապ օգնության» բրիգադն է այդ:

Նրանք կոլտնտեսությանն սկսել են օգնել վաղ գարնանից: Շրջանավարտները ավարտական քննությունները հաջողությամբ հանձնելուց հետո վճռել են երկու տարի աշխատել կոլտնտեսությունում, նոր միայն մեկնել ուսումը շարունակելու: Իսկ բարձր դասարանցիները տեղափոխվել են երեկոյան դպրոց, որպեսզի և՛ սովորեն, և՛ աշխատեն:





# ՈՒԺԻ ՈՒ ԱՐՎԵՍՏԻ ՀԱՂԹԱՆԱԿԸ

Ս. Վշար գյուղի միջնակարգ դպրոցի տուրիստական-հայրենագիտական ջոկատը ամռանը առաջին տեղը գրավեց պատանի տուրիստների հանրապետական մըրցումներում և Բաշկիրիայի Բելարեցկ տեղանքում մասնակցեց Վ. Ի. Լենինի ծննդյան 110-ամյակին ու Մանկան միջազգային տարվան նվիրված համամիութենական մրցումներին:

Թիմում ընդգրկված են 18 պիոներ: Նրանք նըման խոշոր մրցումների մասնակցելու փորձ չունեին, բացի այդ 80 կիլոմետր երթուղին էլ անցնում էր սաղարթախիտ անտառների, ճահիճների միջով: Մի բան, որին սովոր չէին մե-

*Երկրին տալիս են...*

## ՄԻԱԿՆ Է ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՈՒՄ



Արարատ քաղաքի ամենախոշոր ձեռնարկությունը ցեմենտի և շիֆերի գործարանն է, որի տարեկան համախառն արտադրանքը կազմում է 18 միլիոն ռուբլի: Շիֆեր արտադրող միակ ձեռնարկությունն է այն մեր հանրապետությունում: Քանի չէր կառուցվել Հրազդանի գործարանը, ցեմենտի արտադրությամբ նույնպես նա միակն էր:

Քաղաքում կառուցվելու է ցեմենտի նոր, ժամանակակից տեխնիկայով հագեցած խոշոր կոմբինատ, որը երեք անգամ ավելի արտադրանք կտա, քան ներկայիս գործարանը:

րոնք: Սակայն թե՛ այդ, թե՛ պահանջված չորս մարզաձևերից նրանք լավ քննություն բռնեցին և գրավեցին երկրորդ տեղը: Համամիութենական մրցումներում մեր հանրապետության պատանի տուրիստները առաջին անգամ էին ընման հաջողության հասնում: Անցկացվում էր նաև պատանի տուրիստների համամիութենական հեռակա մրցություն, որտեղ ավշարցի պատանիները գրավեցին առաջին տեղը:



Բաշկիրիայում կայացած մրցումներում հայ պատանիները մրցանակային տեղեր գրավեցին և գավաթներ ու պատվոգրեր շահեցին նաև ո՛չ հաշվարկային միջոցառումներից ու խաղերից՝ երգ ու պարից, ճաշ պատրաստելուց, ֆուտբոլից ու վոլեյբոլից...

Ջոկատի անդամներ Ալվարդը, Անահիտը, Արմենը, Սամվելն ու մյուսները շնորհակալությամբ են հիշում իրենց շեֆությունը վերցրած Բաշկիրիայի պանրագործարանի կոլեկտիվի, հատկապես նրա դիրեկտոր Աղվան Նուրբեկյանի ջերմ ու հոգատար վերաբերմունքը.

— Ամեն առավոտ՝ մրցումներից առաջ Աղվան քեռին մի արկղ պաղպաղակ ու շոկոլադի սալիկներ էր ուղարկում մեզ,— պատմում է Անահիտը,— իսկ մրցումների ընթացքում կոլեկտիվի անդամները ո-

*Երկրին տալիս են...*

## ՄԻՈՒԹՅԱՆ ՄԵՋ ԵԶԱԿԻ

Արմաշը ոչ միայն մեր հանրապետության, այլև Սովետական Միության նշանավոր գյուղերից է: Նախկին քարքարոտ, փուշ ու տատասկով ծածկված հողերը վեր են ածվել անծայրածիր այգիների, բանջարանոցների, փարթամ պարտեզների և այգիների մեջ վեր են բարձրացել տուֆակերտ առանձնատներ: Գյուղում հիմնադրվել է իր տեսակի մեջ Միությունում եզակի սանիտարական կուլտուրայի թանգարան, գործում է մեծ հիվանդանոց: Անցյալ տարի Արմաշում անցկացվեց համամիութենական գիտաժողով, որը քննարկեց գյուղական բնակչության բուժսպասարկման հետ կապված բազմաթիվ հարցեր: Այնուհետև գյուղում կատարվող աշխատանքները ուսումնասիրելու և փորձի փոխանակման եկան Ասիայի և Աֆրիկայի 18 երկրների բուժաշխատողներ...

## ՄԵՐ ՀՈՂԻ ԲԵՐՔԸ

Տարեկան 23 միլիոն պայմանական տուփ մրգահյութեր, կոմպոտներ, լոլիկի մածուկ: Այսպիսին է շրջանի պահածոների գործարանի հզորությունը: Գործարանի արտադրանքն առաքվում է Սովետական Միության տարբեր քաղաքներ, արտահանվում Լեհաստան,

գնորում էին մեզ և բարձրաձայն վանկարկում. «Հա՛-յա՛ս-տա՛ն, հա՛ղ-թա՛-նա՛կ» բառերը: Մրցակից ջոկատների թե՛ անդամները, թե՛ ղեկավարները հաճախ կատակով ասում էին.

«Հայկական խումբը սեփական հարկի տակ է հանդես գալիս, իսկ տանը պատերն էլ են օգնում»:

Ավշարցի պատանիները արդարացրին ավագների հույսերը: Նախ մրցանակային երկրորդ տեղը գրավեցին, ապա և գործարանի ակումբում բացեցին հայկական պատմական հուշարձանների և այլ տեսարժան վայրերի լուսանկարների ցուցահանդես, նաև ցուցադրեցին 200 գունավոր սլայթներ՝ մեր հանրապետության դասական ու ժամանակակից ճարտարապետության, արվեստի և բնության մասին: Իսկ հրաժեշտի երեկոյին հանդես եկան ճոխ համերգով: Համարներից մեկը՝ «Էրեբունի» երգը կատարում էր էստոնացիներից, ուկրաինացիներից ու հայերից կազմված երգչախումբը... Ահա այս ամենի շնորհիվ էր, որ հավաքում ծնվեց երկրորդ դիպուկ արտահայտությունը. «Հայաստանի ջոկատը ոչ միայն տուրիստական մրցումներին մասնակցելու է եկել, այլև Բաշկիրիայում հայ արվեստի տասնօրյակ անցկացնելու»:

*ՎԱՀԱՆ ՄԽԻԱԿՅԱՆ*

## ԹՎԵՐ, ՓԱՍՏԵՐ

● **27 մշակույթի տներին և ակումբներին կից գործում են գեղարվեստական ինքնագործունեության 46 խմբեր, որոնցում ընդգրկված են 872 մարդ:**

**Բոլոր բնակավայրերում կան մշտական գործող կինոկետեր:**

● **Ժողովրդական կոչմանն են արժանացել Վեդի ավանի մշակույթի տան թատերական խումբը, Շիրազլուի մշակույթի տան «Վասպուրական» ազգագրական պարի անսամբլը, Փոքր Վեդու երգի-պարի անսամբլը և Երասխի «Արարատ» հանքային ջրերի գործարանի «Ավարայր» վոկալ-գործիքային անսամբլը:**

Գերմանական Ֆեդերատիվ Հանրապետություն, Ճապոնիա, Դանիա, Սիրիա և այլ երկրներ:

## ՅԱՊԱ ՋՐԵ՛ՐԸ...

Երասխի «Արարատ» հանքային ջրերի գործարանը 10-րդ հնգամյակի ծնունդ է: Սակայն այդ երիտասարդ ձեռնարկությունը վստահորեն ոտք է մեկնում հին ու հզոր ձեռնարկությունների հետ: Նախատեսված 13 միլիոն շշի փոխարեն տարեկան արտադրում է 45 միլիոն շիշ բարձրորակ և առողջության համար շատ օգտակար ջուր: Երեք տարի է, ինչ տասը եռամսյակ անընդմեջ գործարանը հաղթող է ճանաչվում ՍՍՀՄ սննդի արդյունաբերության շուրջ երկու միլիոն ձեռնարկությունների մեջ և շահում փոխանցիկ կարմիր դրոշը:





# ՊԵՂՎՈՒՄ Է ՀԻՆ ՄԱՅՐԱՔԱՂԱՔԸ

«...Կառուցվեց մեծ ու խիստ գեղեցիկ մի քաղաք, որը կոչվեց թագավորի անունով և հռչակվեց Հայաստանի մայրաքաղաք...»— ավելի քան երկու հազար տարի առաջ այսպես է գրել հույն պատմիչը Հին Հայաստանի մայրաքաղաք Արտաշատի մասին: Իսկապես, «մեծ ու խիստ գեղեցիկ» քաղաք է եղել պատմական Արտաշատը, որը հիմնադրվել է մ. թ. ա. 180—170 թվականներին և շուրջ 500 տարի ծառայել է որպես հայ ժողովրդի համախմբման, միավորման վարչական կենտրոն:

ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս, հնագիտության և ազգագրության ինստիտուտի դիրեկտոր Բաբկեն Առաքելյանի ղեկավարած արշավախումբը արդեն 10 տարի է, ինչ սկսել է պեղումները. մայրաքաղաքը կառուցվել է ուղիղ Արարատ լեռան դիմաց, ինը բլուրների վրա՝ յուրաքանչյուրը շրջապատված պարսպով:

Երկու տասնամյակների ընթացքում թեև պեղվել է միայն մեկ թաղամաս և

## Երկրին տալիս են...

## «ԿԵՆՏ ՄԻ ՏՈՒՆ»



Վանաշենի կոլտնտեսության բրիգադավար, ՍՍՀՄ պետական մրցանակի դափնեկիր, սոցիալիստական աշխատանքի Հերոս ԱԲՐԱՀԱՄ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Վանաշենի նախկին՝ Թայթան անունը նշանակում է մեկ տուն կամ կենտ մի տուն, իսկ հիմա գյուղը 400 տնտեսություն և 1300 բնակիչ ունի, որոնցից 484-ը՝ աշակերտներ են: Տարեկան այստեղ արտադրվում է 2000—2400 տոննա խաղող, 4—5 տոննա բանջարեղեն, 300—400 տոննա ծխախոտ: Գյուղը ունի տասից ավելի Լենինի, Աշխատանքային կարմիր դրոշի, Աշխատանքային փառքի շքանշանակիրներ, երկու տասնյակ կոլտնտեսականներ արժանացել են մեդալների ու պատվոգրերի: 1975 թվականին Աբրահամ Գրիգորյանի ղեկավարած բրիգադը հեկտարից 277 ցենտներ խաղող և 17,6 հազար ցենտներ սոխ ստացավ, իսկ ընդհանուր առմամբ պետությանն հանձնեց մոտ կես միլիոն ռուբլու



երկու բլուրների առանձին հատվածները, սակայն հայտնաբերվել են շատ արժեքավոր նյութեր: Գտածոների պսակն է հանդիսանում մ. թ. ա. երկրորդ դարի կանացի մարմարե արձանը: Այն անվանել են Արտաշատյան Աֆրոդիտե, և առայժմ այդ տեսակի արձաններից հինգերորդն է աշխարհում: Դարբնոց-զինանոցներից մեկում հայտնաբերել են Տիգրան Մեծի 29 արծաթե դրամներ, քարե, կավե, արծաթե բազմաթիվ այլ իրեր... Պեղումների ժամանակ գտնվել են նաև ինը երկրների դրամներ, որոնք վկայում են, որ Արտաշատը շատ երկրների հետ ունեցել է տնտեսական ու առևտրական կապեր:

2200-ամյա քաղաքամայրը դեռ շատ գաղտնիքներ կբացի Հին Հայաստանի մասին:

պտուղ ու բանջարեղեն, և բրիգադիրն արժանացավ ՍՍՀՄ պետական մրցանակի: Այգիները լավ խնամելու, բարձր բերք ապահովելու համար Պողոս Պողոսյանին շնորհվեց սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում:

Պիոներ-դպրոցականները իրենց դպրոցի շուրջը տնկել ու աճեցրել են 16 տեսակի 600 ծառ ու թուփ, և մինչև խոր աշուն այնտեղ ծաղկում են վարդերը: Դպրոցամերձ հողամասում պատանի բնասերների խմբակը հետաքրքիր փորձեր է դրել բազուկի, եգիպտացորենի, լոլիկի, խաչաձև փոշոտում կատարել և բավականին բարձր բերք ստացել: Դպրոցամերձ հողամասից տարեկան նրանք ստանում են շուրջ 2500 ռուբլու խաղող, պտուղ ու բանջարեղեն:



# ՓՈՔՐԻԿՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## Թռչունի սերտը

ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ

Սիրտը թռչունից
Առաջ է թռչում,
Որ երբ որսորդը
Հրացանն առնի
Ու նշան բռնի
Թռչունի սրտին,
Փամփուշտը այնտեղ
Ոչինչ չգտնի…
Սրտի փոխարեն
Լինի միայն օդ,
Փամփուշտի համար
Թռչունը թվա
Մի դատարկ անոթ:

Իսկ վարում շշկված
Որսորդը վախից
Ամեն ինչ նետի,
Փախչի անտառից:





## Ես ամպիկն եմ

ԴԱՎԻԹ ՀԱՎՀԱՆՆԵՍ

Ես ամպիկն եմ,
ամպ-զամպիկն եմ,
կախարդական մի գորգ եմ,
հազար տեսակ գույներ ունեմ,
ուր որ ուզեմ՝ կթռչեմ,
իսկ թե չուզեմ՝ կմնամ
այստեղ,

կուզեմ՝ կարկուտ, կուզեմ՝ ձյուն,
բյուրեղ-բյուրեղ ու սիրուն:

Բայց ՚այս բոլորն ի՞նչ է որ,
դուք հունարներն իմ բոլոր
դեռ չգիտեք.
ա՜յ, տեսե՛ք,
ձևեր կառնեմ զանազան,
կդառնամ մարդ
կամ գազան,—
մեծ քթավոր, ա՜յ քեզ զարդ,
մի անսովոր կենդանի,
որ տասը ոտ, հինգ գլուխ
և նույնքան էլ պոչ ունի:
Բա՜, ամպիկն եմ,
ամպ-զամպիկն եմ,
կախարդական մի գորգ եմ,
ազատ թռչում եմ չորս կողմ.
ոչ մի բանից վախ չունեմ,
բարեկամներս են անգին
Հրաչոն, Սաքին ու Բեկկին,
իսկ իմ միակ թշնամին
այն գիժ քամին է. քամին,
որ հենց փչեց անողորմ,
ինձ իր թևի տակ կառնի,
ուր որ ասես՝ կտանի:



## Երկու շնիկ

ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ

Երկու շնիկ մի բակում՝
Մի սև, մի ճերմակ,
Միասին են ջուր լակում
Կաղամախու տակ:

Միասին են վազվզում,
Նստում միասին,
Միասին են երազում,
Հսկում միասին:

Երկու շնիկ են հաչում՝
Ճերմակ, թխահեր:
Մեկին Բոբիկ են կոչում,
Մյուսին՝ Ստվեր:

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ







# Ռիկկի ջան

ՄԱՐԳՈ ՂՈՒԿԱՍՅԱՆ

## 5. ԽԱՉԵՎԱՐԴ ՊԱՊԻ ՊԱՏՄԱԾԸ

Փախած ձագին փեթակ վերադարձնելուց հետո, մեծ ու կարևոր գործ գլուխ բերած մարդկանց նման բոլորը խոր շունչ քաշեցին:

— Մի փեթակ էլ ավելացավ,— ասաց պապը,— մեղվաընտանիքը մեծացավ: Հիմա գնանք լվացվենք: Ես՝ գործ արած մարդ, դուք՝ ճամփից եկած, բոլորս էլ սոված:

Արևթագուհի տատը նախաճաշի սեղան էր պատրաստել: Մեղրը լցված էր կավե ամանի մեջ ու շողշողում էր հալած սաթի ոսկեգույնով: Խաշած ձվերի կողքին մի լիքը ափսե մատղաշ դաղձ կար և ամբողջական լավաշներ:

— Բրդո՛ւճ արեք խաշած ձուն դաղձով,— ասաց Արևթագուհի տատը:

Խնոցուց նոր հանած կարագից թանը ծորացել էր ափսեի մեջ: Արևթագուհի տատն այն հազվագյուտ կինարմատներից էր, որ խնոցուց չէր ուզում հրաժարվել: «Խնոցին տան զարդն է,— ասում էր նա,— տան շնորհքն ու խերը խնոցու մեջ է»:

— Ձուն դաղձո՛վ կերեք, հետո իմ հարած կարագը՝ պապի քաշած մեղրով, կյանքներդ կերկարի:

Մատղաշ դաղձի գգլիչ բույրը բարձրանում էր սեղանից ու երևի դրանից էլ բոլորի ախորժակը գրգռվել էր: Ձվերի ափսեն դատարկվեց: Հերթը հասավ կարագին: Իրոք որ՝ խնոցու թարմ կարագին ի՞նչ կհասնի:

— Դե հիմա ականջ դրեք ձեր Ռիկկիի արկածներին,— սկսեց Խաչե-

# պատմությունը

վարդ պապը:— Մի քանի օր հոգի հանեց: Սպիտակ գառնուկի ոտքն այնպես էր կծել, որ ստիպված խեղճին պահ տվեցի հարևանին: Այս ո՞նց էիք փչացրել խեղճ կենդանուն, որ գիշերը չէր ուզում դրսում մնալ: Կուռկուռի ձագ ասեմ, կատու ասեմ: Մինչև վարժեցրի, հոգիս դուրս եկավ: Հին մեղվափեթակից բույն եմ սարքել:

— Սպիտակ գառնուկը դեռ հարեվանի մո՞տ է,— հարցրեց Արամը:

— Չէ՛, մի շաբաթ հետո բերեցի: Հիմա Ռիկկին մեր անասուններին ճանաչում է ու կատաղած հարձակվում բանջարանոց խուժած օտար անասունների վրա:

— Հարևանների շների հետ ընկերացե՞լ է:

— Ա՛յ, այդ մասին հարցրեք: Խելքըս բան չի կտրում, ինչո՞ւ է վրա քշում իրենից մեծ շներին: Այնպես էլ գազազած է հարձակվում, կարծես պետք է հում-հում կուլ տա: Ինչ ճիշտն է, ճիշտ, մի անգամ լավ տուժեց: Գպեենց Արաբը մի՛ գզել էր գզել: Մի քիչ որ ուշ հասնեի, կգայիք փոստն էլ չէիք տեսնի: Փայտը շպրտեցի Արաբի վրա, այս խեղճ ու կրակին ազատեցի:

Արևթագուհի տատը միջամտեց.

— Դու էլ լավ էիր ջղայնացել, գոռում էիր՝ ոտքդ վերմակի՞դ չափով երկարացրու, ա՛յ քաղաքի շուն, ա՛յ թշվառական: Վա՛յ, կա՛թը, կա՛թը,— վեր թռավ նա ու վազեց:

Քիչ հետո տատը ժպտալով վերադարձավ ու սեղանին դրեց թասով լի կաթը, որը, փա՜ռք ամենակարողին, չէր թափվել, և որից փափուկ, դուրեկան զրույցը շուռ էր եկել փախած մեղվապարսի վրա:

— Ջագը այդ ո՞ւր էր փախչում, ումի՞ց էր փախչում,— հարցրեց Տիգրանը:

— Գարնան վերջին կամ, ավելի շուտ՝ ամռանը մեղուն շատանում է փեթակում: Մինչև հիսուն, վաթսուն հազար մեղու՝ մի ընտանիքում: Տեղը նեղանում է: Բջիջները՝ լիքը մեղր ու թրթուր, այդքան էլ՝ մեղու: Ի՞նչ անել. մայր մեղուն է որոշումը կայացնում: Փեթակից դուրս է թռչում ու նրա ետեվից էլ՝ հազարավոր երիտասարդ մեղուները: Թե որ մեղվապահի բախտը բերեց, մոտիկ եղավ, կտեսնի որ կողմը թռավ: Այս անգամ, օրինակ, թռավ դեպի ալոճենին: Տեսա՞ք ինչ կծիկ էր դարձել, ողկույզի պես կախվել ծառից: Իսկ թե որ չտեսար, զորս դու պատվիրեցես՝ կթռչի ուր աչքը կտրի:

— Իսկ եթե մոտակայքում ծառ չլինի՞,— հարցրեց Ցողինարը:

— Ծառ չլինի, թուփ կլինի, փուշ կլինի, խոտ ու քար կլինի: Մայր մեղուն կնստի դրանցից մեկնումեկին: Ջագն էլ ամպի նման կիջնի մոր վրա: Մեղվաբույծն էլ կսպասի մինչև մեղուն հավաքվի իրար գլխի: Կարեվորն այն է, որ մեղվապահը նկատի: Որ նկատեց, ծխարարի ու ձագակալի զորությամբ ետ կբերի:

Հիմա գանք հեռավորությանը: Կարող է հարյուր-երկու հարյուր մետր հեռանա, կարող է՝ մի քանի կիլոմետր: Ջահել ձագն, իհարկե, ավելի հեռու է թռչում: Այսպիսի մի դեպք պատահեց: Մեղուն սարն էի տարել: Վրանի առաջ բացօթյա սեղան էի սարքել, ճաշում էի: Տատդ պանրխաշ էր եփել: Գիտեք, չէ՞, պանրխաշը պետք է տաք-տաք ուտել: Մեկ էլ ուժեղ բզզոց լսեցի: Նայեցի,

տեսնեմ ձագը դուրս է թռչում փեթակից: Ինքս էլ չիմացա ինչու, ափսես վերցրեցի ու գնացի դեպի թռչող պարսը, իբր, տեսնեմ, որտեղ է նստելու: Խոտերի միջով գնացի, գնացի, տեսա շատ է հեռանում, ափսես դրեցի խոտերի մեջ ու վազեցի: Մեղուն իջավ ձորը, նստեց մի մեծ լեռ քարի: Տեղը նշան արեցի ու վերադարձա ձագակալը տանելու: Ետ գալիս ափսես շատ փնտրեցի. ինչքան էի հեռացել, որ տեղը կորցրել էի: Մի երկու ժամ ման գալուց հետո խոտերի մեջ գտա:

— Խաչեվարդ պապ, իսկ եթե փախած պարսը չգտնեք, չի՞ վայրենանա,— հարցրեց Յոդինարը:

— Ինչո՞ւ, կարծում ես մարդուն հաջողվե՞լ է մեղվին ընտելացնել: Ինչպես հազար տարի առաջ, այնպես էլ հիմա: Վայրի մեղուն անտառի հրդեհի ժամանակ փեթակից դուրս գալիս իր մեղրապարկով մի քանի օրվա պաշար է վերցրել, հիմա էլ այդպես է անում: Հենց հիմա ձեր աչքի առաջ այդ փախած ձագը երեք-չորս օրվա պաշար էր վերցրել, մինչև որ հնարավորություն ունենար ընտանիք կազմելու և նեկտար հավաքելու: Եթե մոտակայքում անտառ է լինում ու մեղուն էլ հարմար փչակ է գտնում, անմահական անապատ մեղրը սարքում է հենց իր փչակում: Պատահում է, որ դաշտում է իջնում ու հնձվորները տեսնում են, հավաքում են դույլի մեջ: Գյուղերում տեսե՞լ եք տների առաջ երկու-երեք փեթակ, դրանք գտած մեղվաընտանիքներ են:

— Իսկ եթե շատ բարձր ճյուղի վրա նստի, ի՞նչ կանես:

— Ի՞նչ պետք է անեմ. կբարձրանամ ծառը, ծուխ կտամ, որ մեղուն խաղաղվի, ճյուղը կկտրեմ, զգույշ կիջեցնեմ ու կբերեմ տուն, թափ կտամ դատարկ արկղի մեջ:

Մի անգամ երկու փեթակից միաժամանակ ձագը փախավ: Հավաքեցի, խառնվեցին իրար: Պարզ է, չէ՞, եթե երկու պարս է փախել, ուրեմն երկու էլ մայր մեղու: Մի փեթակի մեջ երկու մա՞յր: Իրար չեն հանդուրժի: Պետք է կռվեն, որը որ երիտասարդ է, նա էլ ուժեղ է, ուրեմն նա էլ կհաղթի ու թույլին կսպանի, փեթակից դուրս կգցի: Այդ տարի ամենաուժեղ փեթակը դա եղավ, մեղր շատ քաշեցի:

— Հա՛, լավ հիշեցի, մի անգամ սարում եկան մեղր առնելու: Մեղրախորիսխ ուզեցին: Փեթակից հանեցի շրջանակը, մեղուներով ծածկված: Առնողն ասաց.

— Քեռի՛, սրա սարեկը լավ չէ, համ էլ դատարկ բջիջներ կան: Մի ուրի՛շը տուր:

Ես շրջանակը դրեցի դատարկ արկղի մեջ ու ծածկեցի: Հետո մոռացա: Այդ օրը երեկոյան հիշեցի հանածըս շրջանակի մասին: Գնացի տեսնեմ՝ ի՞նչ, շրջանակը՝ դատարկ:

— Վա՜յ, վա՜յ,— ձեռքերն իրար շրփեց Յոդինարը:— Մեղուներն այդքան մեղրը կերե՞լ էին:

— Ի՞նչ ես ասում,— ծիծաղեց պապը:— Բանտարկված մեղուները տեսնելով, որ իրենք դատապարտված են սատկելու, մտածել են՝ ինչու այսքան մեղրը կորչի: Մեղրը ծծել են կնճիթով ու արկղի ծակերից փոխանցել դրսի մեղուներին: Դրսից ազատ մեղուն ծծել է ու այդ երեք կամ չորս կիլոգրամ մեղրը տեղափոխել փեթակ:

— Լավ, բա բանտարկված մեղուներն ինչպե՞ս էին իմաց տվել ազատ մեղուներին:

Խաչեվարդ պապը դարձյալ ծիծաղեց:

— Դուք մեղուների մասին ոչի՞նչ չգիտեք: Մեղուներն իրենց հետախույզն ունեն: Մեղուն երբեք նախրի նման դուրս չի գա: Ինչո՞ւ անտեղի թռչի կամ իզուր ուժ կորցնի: Չէ՞ որ թռիչքի ժամանակ մեղր է ուտում: Մեղուն մեղվին հոտառությամբ է ճանա-

չում: Հետո, ճետախույզ մեղուն գը֊նում է, մեղրի կամ նեկտարի տեղն իմանում ու նեկտար վերցրած վերադառնում: Փեթակում նա պարում է իր շուրջպարը ու բերած մեղրը բաժանում ընկերներին: Այսպիսով, փեթակում եղած մեղուները ճավատում են, որ իրենց ընկերն առատ կերի տեղ է արել և ճրապուրված թռչում են նրա ետևից:

— Չճոգնեցի՞ր, ա՞յ մարդ,— ասաց Արևթագուճի տատը,— այս երեխաներին քո մեղուներով կախարդեցիր:

Երիտասարդները, իրոք, կախարդվածի նման լսում էին: Արդեն կեսօր էր, որ Խաչեվարդ պապը սեղանից վեր կացավ ու նրա ճետ էլ՝ մյուսները:

# ԵՐԻՑՈՒԿԻ ՉՈՎՏԻ ԱՆԴՈՐՐԸ

Բակում Ռիկկին անճամբերությունից ուտում էր իրեն: Տեսնելով տղաներին, շունը նորից սկսեց թռչկոտել ու աշխուժանալ: Անդրանիկը կանչեց ու ձեռքով ցույց տվեց անտառի կողմը.

— Անտա՛ռ, Ռի՛կկի, անտա՛ռ ենք գնում:

Երեքով ճամփա ընկան, իսկ Ցողիկարը մնաց, որ սեղանը ճավաքեր և օգներ տատին ճաշի պատրաստությունն տեսնելու: Դեռ չորս օր կար, և նա անտառ գնալու ժամանակ շատ ուներ:



Նկ. ԱՆՈՒՇ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ

Ռիկկին մի քիչ առաջ էր վազում ու շրջվելով թափով հարձակվում մեկնումեկի վրա։ Հետո նորից առաջ էր գնում, կծում-պոկում էր խոտերը կամ դունչը դնում էր թաթերին ու սարքովի-խոժոռ հայացքով նայում եկողներին։ Իբր՝ վախեցեք, կհարձակվեմ, հա՜։ Այսպես, մինչև հասան Գայլի դարպաս կոչվող քարանձավին։ Երբվանի՞ց և ինչո՞ւ էր քարանձավը Գայլի դարպաս կոչվում. նրանցից ոչ մեկը չգիտեր։

— Կարո՞ղ է ներսում գայլ լինի,— կատակով հարցրեց Տիգրանը։

Արամն ասաց, որ ինքը մի հազար անգամ մտել է այդ քարանձավը և ոչ մի անգամ այնտեղ գայլի չի հանդիպել։ Խավարամած այդ քարանձավում կարծես խտացել էր լռությունը։ Սառը օդից մի քիչ խոնավություն, մի քիչ անկահոտ էր բուրում։ Սկզբում համարյա բան չէին տեսնում։ Մեկ-երկու րոպե անց աչքերը վարժվեցին ու նկատեցին, որ անձավի պատերի տակ քարե ելուստներ կան, կարծես մեկը քարաբեկորները տաշել-տաշտշել էր և պարզ ու հասարակ աթոռներ քանդակել։ Նստեցին բնական այդ աթոռներին։ Հանդարտության այս ի՞նչ զգացում էր պարուրել նրանց։ Անդրանիկն ասաց, որ անձրևի ժամանակ Խաչեվարդ պապն այստեղ շատ անգամ է պատսպարվել։

Տիգրանը նայում էր քարանձավի կամարակապ մուտքին, որից ներս լռություն էր և խավար, և որից դուրս՝ պայծառ օր էր ու թվում էր, թե արևն իր շողերով վարագուրել է մուտքը և չի թողնում ներս թափանցեն ջերմությունն ու լույսը։ Ռիկկին քարանձավի մուտքի մոտ, ետևի ոտքերի վրա նստել էր ու կարծես օդը հոտոտում էր։ Գուցե նա զգո՞ւմ էր գայլերի շունչը, որոնք գիշերել էին այդտեղ։ Այս քարանձավը դարեր ու դարեր գոյություն է ունեցել։ Եվ ժամանակ առ ժամանակ այստեղ ապահով երդիկ են փնտրել երբեմն մարդիկ, երբեմն ոչխարի հոտեր և երբեմն էլ գայլեր։ Տղաները, ամեն մեկն իր մտքերի մեջ, այսպես մի քիչ էլ նստեցին և երբ դուրս եկան, արևն ավելի պայծառ թվաց ու լույսը՝ կուրացուցիչ։ Քարանձավ բերող արահետի երկու կողմերում խաթուն-ավել ծաղկի բույլերը աչք էին շոյում իրենց կապույտ թավիշով։ Մի քիչ էլ գնացին. Ռիկկին գնդակի նման առաջ թռավ։

— Աղբյուրի տեղը գիտի,— ասաց Անդրանիկը։— Պապի հետ երևի այս կողմերում եղել է։

Մի հարյուր մետր անցնելուց հետո, նրանք տեսան, որ Ռիկկին վրա է ընկել ջրին ու ագահաբար լակում է։

Մոտեցան։ Շրջապատեցին աղբյուրի ակը։ Հրաբխի փոքրիկ խառնարանի նման ջուրը բլթբլթալով դուրս էր հոսում։ Մի բարի ձեռք առու էր սարքել ու առվի վրա կաղնեփայտե ջրհորդան դրել։ Ջրհորդանից փոքրիկ ջրվեժի նման ջուրը թափվում էր ցած, հատուկ հարմարեցրած գլաքարի վրա։ Պսպղուն կաթիլները ցայտում էին խոտերին, որոնց մեջ դեղնածաղիկները շատ-շատ էին։ Եվ նրանց փայլուն, յուղոտ ծաղկաթերթերին շաղը չէր գոլորշիանում գիշեր թե ցերեկ։ Հետո պաղ առուն ոլորվում էր առաջ ու ճամփան երիզվում էր դաղձի կապտականաչ թփիկներով։

— Երիցուկի հովիտը երևում է,— ասաց Անդրանիկը։

Նրանք մի կուշտ ջուր խմեցին ու գնացին դեպի աջ։ Գուցե կարելի էր հովիտ չկոչել, որովհետև այնքան էլ մեծ տարածություն չէր։ Մի փոքր, կլորավուն ասպարեզ՝ մասրենիներով ու պլոճենիներով երիզված։ Բաց տարածությունում անձեռակերտ ծաղկանոց՝ երիցուկներ, միայն ու միայն երիցուկներ, վառ-դեղին կլորակների շուրջ սպիտակ ծաղկաթերթերը ժըպտում էին արևին։

Տիգրանը մեկնվեց ծաղիկների վրա. Ռիկկին պպզեց կողքին:

Միանգամից այսքան շատ ծաղի՜կ: Արամի ու Անդրանիկի համար նորություն չէր, և նրանք ուրախ էին, որ իրենց ընկերոջը այդքան մեծ բավականություն են պատճառել:

Տիգրանը նայում է երկնքին. «Երբ մեջքի վրա ես պառկում, ինչո՞ւ է երկինքն այսքան հեռանում»: Հանկարծ նա նկատում է շանը. շունը դունչը տնկել է վեր ու Տիգրանի հայացքի ուղղությամբ նույնպես երկնքին է նայում: Տիգրանը շրջվում է փորի վրա և աչքի պոչով նայում շանը: Ռիկկին հիմա էլ ցած է նայում:

— Սա ինձ կապկում է,— բարձրաձայն ասում է Տիգրանը: Հետո նա դեմքը թաղում է ծաղիկների մեջ. մարդիկ ինչո՞ւ են կենդանիներին այսքան շատ սիրում, մտածում է նա ու պարզ, պայծառ օրվա մեջ թախծալի մի պատմություն է վերհիշում:

«Մեր հին տան հարևանի տղան՝ Վաղինակը, օգտվելով առիթից, որ մայրը տանը չէր, պահարանից հանել էր սև, փայլուն մազերով աղվեսից պատրաստված օձիքը: Աղվեսի աչքերի փոխարեն սև ուլունքներ էին դրված, բայց թաթերի ճանկերը իսկական էին: Մի քանի երեխա էինք, բոլորս մեկմեկ շոշափեցինք, մեջքն ու պոչը շոյեցինք: Ի՜նչ գեղեցիկ էր, ա՜խ, երանի մի փոքրիկ, կենդանի աղվեսուկ ունենայինք: Բույն կշինեինք, աղվեսը ձագ կբերեր: Իսկ ինչո՞ւ չտանենք բակ ու առաջին հանդիպածին վախեցնենք: Վաղինակը մորթին գցեց գլխին ու երկու ձեռքով դունչը պահեց քթի առաջ, մյուսներս՝ նրա ետևից: Բակում մարդ չկար: Մենք թաքնվեցինք պատի ետևում ու սպասեցինք. տեսնես ո՞վ կգա: Տնից դուրս եկավ երկրորդ դասարանցի Հրանուշը: Նա դպրոց էր գնում և պետք է այդ պատի մոտով անցներ: Երբ Հրանուշը հավասարվեց մեզ, Վաղինակը դուրս թռավ, և մենք էլ՝ նրա ետևից: Գազանավարի մռնչում էինք ու վայրի ձայներ հանում»:

Տիգրանը միանգամից շրջվեց մեջքի վրա ու խորը տնքաց:

— Ի՞նչ պատահեց,— հարցրին ընկերները:

— Տխուր մի բան հիշեցի,— ասաց նա ու պատմեց իրենց «քաջագործության» մասին:

— Հրանուշը շա՞տ էր վախեցել,— հարցրեց Արամը:

Անների հանցանքի մասնակից եղածի նման Տիգրանն ասաց.

— Մի՛ հարցրու, ասելու բան չէ:

Նա նորից շրջվեց փորի վրա ու նորից դեմքը թաղեց ծաղիկների մեջ:

«Փաստորեն անկենդան աղվեսի մորթու պատճառով Հրանուշը խեղանդամ դարձավ: Առաջին օրերը խոսելու ընդունակությունը լրիվ կորցրել էր: Կամաց-կամաց սկսեց հատուկենտ բառեր արտասանել: Քանի՜ բժշկի մոտ տարան: Բուժվեց, բայց կակազությունը մնաց: Հրանուշի մայրն ինչքան էր լալիս, մեր մայրերն էլ՝ նրա հետ»: Տիգրանը նորից շրջվեց մեջքի:

— Ճիշտ էր Ռիկկիին գյուղ ուղարկելը:

— Ինչո՞ւ,— հարցրեց Անդրանիկը:

— Հիշո՞ւմ ես ձեր շքամուտքի Աստղիկոն ինչպես էր վախենում, երբ աստիճաններին վրա հանդիպում էր շանը: Մեջքով կպչում էր պատին ու շունչը պահում: Ինձ թվում էր, թե նա ուզում է պատի մեջ թաքնվել, որ շունն իրեն չքսվի: Երևի փոքրիկ Աստղիկոյին թվում էր, թե Ռիկկին մի մեծ, չար գազան է և կարող է իրեն հոշոտել:

— Ճիշտը որ խոստովանեմ, Աստղիկից պակաս ես չէի վախենում,— ասաց Անդրանիկը:

— Ումի՞ց, Ռիկկի՞ից:

— Չէ՛: Մի քանի օր առաջ անցնում էի Ծախմատի տան զբոսայգով: Հորթի չափ մի շուն էին վազեցնում, ա-

ռանց դնչակալի։ «Պատնե՞շ» գոռում էին, «պատնե՞շ», ու շունը թռչում էր նստարանի վրայով։ Որ իմ կողքով անցավ ու քամու հոսանքը կպավ ինձ, սիրտս կանգնեց։ Ես մի կողմ քաշվեցի։ Զբոսանքի եկած երեխաները վախից կպչում էին իրենց ծնողների ոտքերին։ Մեկը գոռալով լաց էր լինում, իսկ տիրոջ պետքն էլ չէր. նա հպարտորեն ցուցում էր տալիս՝ «պատնեշ, պատնեշ», ու շունը թռչում էր խուզված թըփերի վրայով։

Արամը, որ մինչև այդ լուռ լսում էր, ասաց.

— Ես զարմանում եմ, թե այս գեղեցիկ բնության մեջ ինչու եք այդ տխուր պատմություններով տարվել։ Արևթագուհի տատը որ լսի, թե երիցուկների հովտում դուք ինչի մասին եք զրուցել, կծիծաղի ձեզ վրա։ Երբ մենք միասին այստեղ ենք գալիս, տատը բոլորովին չի խոսում։ Նա երգում է։

Այդ ասելուն պես Արամը վեր թռավ.

— Սոված եմ, սոված եմ, տուն գնանք։

Արևթագուհի տատը նրանց խոստացել էր թոնրի մեջ կարտոֆիլ գցել, որը, իր ասելով «շուշանի թթվով անմահական համ ունի»։ Երեքով ճամփա ընկան։ Տունդարձին Ռիկկին դարձյալ առաջ էր վազում ու մեկ էլ ետ ընկնում։ Երբ անտառից դուրս եկան, տեսան Արևթագուհի տատին և Ցողինարին։ Ցողինարը թաշկինակն էր թափահարում, իբր՝ եկեք, եկեք, իսկ տատը ձեռքը աչքերին հովանի էր արել ու նայում էր անտառի կողմը։

Երբ մի քիչ էլ մոտեցան, լսեցին նրա ձայնը.

— Ո՞ւր եք կորել, ո՞ւր եք կորել, կարտոֆիլը թոնրից հանել եմ, պապը գնացել է ձեզ փնտրելու Գայլի դարպասի կողմերը, կամ էլ Առաքելի բինեքը՝ սառնաղբյուրի մոտ։

ՎԵՐՋ

## ԱՄԱՆՈՐՅԱ ՍՈՎՈՐՈՒՅԹՆԵՐ

● Նոր տարվա նախօրյակին միմյանց երջանկություն, հաջողություն մաղթելու, նվերներ հանձնելու սովորույթը հիմնվել է հին հռոմեացիների կողմից դեռևս մեր թվարկությունից առաջ 158 թվականին։ Այն ժամանակ գտնում էին, որ ինչպիսին լինի առաջին օրը, այնպես էլ կանցնի ողջ տարին։ Դրանից ելնելով էլ՝ նոր տարվա առաջին օրը, բոլոր գործերը մի կողմ թողած, հագնում են նոր զգեստներ և ուրախանում։

Այդ հնագույն սովորույթների արձագանքները հասել են այսօրվա իտալացիներին. ամանորի նախօրյակին նրանք հին իրերը դուրս են նետում պատուհանից։

● Կրետե կղզում նոր տարին սկսելուց հետո տուն մտնող առաջին մարդը իր հետ մեծ քար է բերում, դնում հատակին, նստում վրան և ամանորյա մաղթանքներ ուղղում տան տերերին։ Վերջում նա ասում է. «Թող այս քարի մեծությամբ ոսկի մտնի ձեր տունը»։

● «Առաջին ոտքը»— համաձայն Անգլիայում տարածված ամանորյա սովորույթի, նոր տարվա կեսգիշերից հետո ոտքը ներս դրած մարդուց է կախված, թե ինչպիսին կլինի ամբողջ տարին։ Եթե հարուստ, զվարթ ու երջանիկ մարդ մտավ տուն, ապա ամբողջ տարին տանեցիներին կուղեկցի հաջողությունը։ Եթե աղքատ, դժբախտ ու չար մարդ եկավ, ուրեմն ծանր տարի կլինի։ Կարևոր է նաև «առաջին ոտքի» անվան և ազգանվան սկզբնատառերը. անվան և ազգանվան առաջին տառերը վերծանելով, կարելի է իմանալ, թե ինչ է սպասում քեզ նոր տարում։

«ԼՈՒՍԱԲԵՐ»-ից




# ԱՌՅՈՒԾԻ ԵՐԱԶԸ

Առյուծի կորյունը փակված էր վանդակում: Նա մռայլ նայում էր ամուր երկաթե ձողերի ետևից: Կարոտով հիշում էր նա իր հայրենի տաք անապատը, հիշում էր, թե ինչպես գիշերները, աստղերի լույսով, իր մոր հետ ընկնում էր արագավազ եղնիկների ետևից, ինչպես ազատ, ուրախ, իր քույր ու եղբայրների հետ, մոր կողքին խաղում էր արմավենիների տակ:

Այժմ անցել է ամեն բան, և գազանանոցում փակված, գերի, տխուր նայում էր նա հաստ ձողերի ետևից:

Գիշեր էր: Ծուրջը՝ լուռ ու խաղաղ: Գազանանոցի գերիները՝ վագրը, արջը, գայլը, կապիկները, ջայլամը, եղջերուները,— ամենքը իրենց վանդակներում, հարդի վրա ընկած՝ ըսպասում էին լուսանալուն:

Վերջապես հոգնած առյուծի ձագն էլ գլուխը դրավ թաթերի վրա ու քնեց:



Գիշերվա մի ժամանակ հանկարծ գազանանոցի դուռը ետ բացվեց ու ներս մտավ նրա մայրը: Ներս մտավ հըպարտ ու հզոր, կրակոտ աչքերըման ածավ վանդակների վրա ու տեսա՜վ...

Նա տեսավ իր զավակին: Աչքերը փայլատակեցին, մռնչաց, հարձակվեց, իր զորեղ զարկով ջարդեց վանդակի ձողերը...

Կորյունը ուրախությունից ճչաց, վրա թռավ, որ ընկնի մոր գիրկը, դիպավ երկաթի ձողերին ու զարթնեց...

Տեսավ՝ երազի մեջ էր...

Գիշեր էր: Ծուրջը լուռ ու խաղաղ: Գազանանոցի գերիները — վագրը, արջը, գայլը, կապիկները, ջայլամը, եղջերուները — ամենքը իրենց վանդակներում, հարդի վրա ընկած՝ սպասում էին լուսանալուն:

Կորյունը երկար ու ձիգ մռնչում էր գիշերվա լռության մեջ:





ՌՈՒԺԱ ԿՈՅԵՋԻԿՈՎԱ

# Խաղալիքների սքանչելի աշխարհը



Մանուկների անդավաճան բարեկամները՝ խաղալիքները, հազարամյակների պատմություն ունեն: Այդ են հաստատում նաև հնագիտական պեղումների ընթացքում հայտնաբերված շատ հնագույն խաղալիքներ՝ բազմազան գնդիկներ, զանգուլակներ, որոնք շատ են հիշեցնում ժամանակակից խաղալիք կացնիկներ, դանակիկներ... Դրանց մեծ մասը պատրաստված է կավից կամ ոսկրից: Փայտից նույնպես եղել են, բայց չեն պահպանվել:

Սքանչելի խաղալիքներ են պատրաստել Ասիայի և Արևելքի ժողովուրդները՝ ճապոնական նշանավոր տիկնիկները, օդապարուկները, որ մեզ են փոխանցվել Չինաստանից, Բիրմայից, հնդկական զվարճալի ծաղրածուներ և շատ ու շատ ուրիշներ: Հնագույն խաղալիքներից է համարվում անիվավոր ձիուկը (ձիուկը անիվների վրա), որը մեր թվարկությունից առաջ երրորդ հազարամյակին է պատկանում (ծագումը եգիպտական է):



Ինչպե՞ս են հանդես եկել խաղալիքները: Մի՞շտ են արդյոք երեխաների զվարճության առարկա հանդիսացել: Հայտնի է, որ անհիշելի ժամանակներից սկսած, մարդը կենդանիների և մարդկանց ֆիգուրաներ էր պատրաստում, վերագրելով դրանց մոգական զորություն: Մարդիկ կրում էին դրանք վզներին իբրև հմայիլ՝ չար աչքի և կախարդանքի դեմ կամ օգտագործում կրոնական ծիսակատարությունների ժամանակ: Հետագայում դրանք կորցնելով պաշտամունքի նշանակությունը, դարձան խաղալիքներ:

Պատրաստվում էին ձեռքն ընկած նյութով՝ ոսկր, մոմ, ծղոտ, եգիպտացորենի կոն, կաշվի կտորտանք:

Տիկնիկներն հանդես եկան ուշ: Ծինում էին փայտից, ներկում, նախշազարդում: Ջիլերով, իսկ ավելի ուշ երկաթալարով մարմնի վրա շարժական ձեռքեր ու ոտքեր էին ամրացնում: Առանձնահատուկ գեղեցկությամբ աչքի էին ընկնում հին հունական տիկնիկները, ռեալիստական արվեստի ծաղկման շրջանում: Զարմանք է պատճառում նրանց դեմքի արտահայտած ոգեշնչվածությունը: Տիկնիկների համար կարում էին հագուստ, փղոսկրից պատրաստում էին խաղալիք կահույք, մեզ են հասել նաև մետաղյա այծեր, ճրագներ: Միջնադարում երեխաների սիրած խաղալիքներն էին ասպետները: Հատկապես հեծյալ և լրիվ հանդերձավորված: Նրանց շարժման մեջ էին դնում թելով:

15-րդ դարի վերջում գերմանական Նյուրնբերգ և Զոնենբերգ քաղաքներում հանդես եկան տիկնիկագործական առաջին արհեստանոցները: Հիշյալ քաղաքների անտառալեռնային ծայրամասերը փայտանյութ

էին մատակարարում, իսկ խաչաձևվող առևտրական բանուկ ճանապարհները նպաստում էին վաճառքին:

Ժամանակի ընթացքում հանդես եկավ խաղալիքների արտադրության արդյունաբերությունը: Այդտեղ աշխատում էին վարպետ հյուսներ, փայտ և ոսկոր նախշազարդողներ, ոսկերիչներ և նկարիչներ: Շատ են սխալվում նրանք, ովքեր կարծում են, թե խաղալիքների մեքենայացումը ծնունդն է տեխնիկայի մեր դարի: Լարովի խաղալիքները գոյություն են ունեցել վաղուց ի վեր: Փակվող-բացվող աչքերով տիկնիկները կարողանում էին նաև ման գալ և խոսել... Այդ թանկագին տիկնիկների համար պատրաստում էին տնակներ, իրենց ողջ կահույքով ու սպասքով: Այժմ նրանք առավել արժեքավոր են այն պատճառով, որ դրանցով կարելի է լինում իմանալ այս կամ այն ժամանակաշրջանի ոճը: Ճիշտ է, չնայած նուրբ աշխատանքին ու թանկ նյութին, նրանք այսօր մեզ չեն զարմացնում հարուստ երևակայությամբ ու գեղարվեստական ճաշակով, ինչով, օրինակ, աչքի են ընկնում ժողովրդական վարպետների աշխատանքները, որոնց պատրաստած խաղալիքները արվեստի գործեր են:

Ժողովրդական ստեղծագործության փայլուն օրինակ են հանդիսանում ռուսական խաղալիքները: Միջին դարերում խաղալիքագործության արվեստն այստեղ արդեն իր բարձրության վրա էր գտնվում: Ռուս մուժիկի հմուտ ձեռքերը կավից փոքրիկ արձաններ էին կերտում, ներկում կենդանի ու վառ գույներով կամ ծածկում գունագեղ ջնարակով: Հնագույն սիրված մոտիվներից էին հեծյալները, թռչունները, լծված կառքերը, արջերը, աղաներն ու դայակները՝ զբոսանքի հանած երեխաների խմբով... Պակաս նշանավոր չեն նաև ռուսական փայտե խաղալիքները, օրինակ՝ փայտյա գունազարդ ձուն, էլ չենք ասում «Մատրյոշկաների» մասին, որ ռուսական ժողովրդական արվեստի խորհրդանիշն են հանդիսանում: Սովետական կառավարության հոգատարությունը նպաստեց հնագույն ժողովրդական այդ արվեստների ավանդույթները վերակենդանացնելուն: Դեռևս 1918 թ. Մոսկվայում ստեղծվեց խաղալիքների թանգարան, 1932 թ. Զագորսկում բացվեց խաղալիքների գիտափորձնական ինստիտուտ: Վերստին ուրախացնում են երեխաներին Բոգորոդսկու չարխաքաշ, Դիմկովսկու և Սկոպինսկու կավե, Գորոդեցկու փայտե նկարազարդած, Ֆիլիմոնովսկու թիթեղյա խաղալիքները:



## 3. ՄԵՐ ԳԱԼԱԿՏԻԿԱՆ

Սկսած հնագույն աստղագետների ուսումնասիրություններից մինչև մեր օրերը, Տիեզերքի ենթադրվող չափերը շարունակ աճում են: Մի քանի հազար տարի առաջվա պատկերացմամբ երկրագունդը շատ սահմանափակ չափերով մի տափարակ էր, ծածկված քաղաքներով, գյուղերով, ծովերով և բազմաթիվ ուրիշ մեծ ու փոքր «անհարթություններով»: Մոտավորապես երկու հազար տարի առաջ պարզ դարձավ, որ մեր բնակատեղին իրականում հողե գունդ է, որն առանց հենարանի ազատ կախված է տարածության մեջ: Գրեթե միաժամանակ արդեն հայտնի էր նաև Լուսնի ուղեծրի տրամագիծը, որը և համարվում էր ողջ Տիեզերքի չափը:

Եվս մեկուկես հազարամյակ անցավ, և Երկիրը «վտարվեց» Տիեզերքի կենտրոնից, դառնալով ամենաշարքային մի մոլորակ: Այն հսկայական հողագունդը, որի վրա ապրում ենք մենք, Արեգակի ու նրա համակարգի չափերի համեմատությամբ նմանվեց տարածության մեջ կորած փոշեհատիկի: Իսկ գիտության զարգացման ընթացքը շարունակում էր արագանալ և Տիեզերքի չափերը շարունակում էին աճել ավելի ու ավելի արագ: Գալակտիկայի հայտնագործումը նորից ընդարձակեց ու խորացրեց տարածության մասին մարդկային պատկերացումները: Այդ նոր ընդարձակման հետևանքով հիմա էլ Արեգակին էր վիճակված փոքրանալ գալակտիկական անծայրածիր հեռավորությունների համեմատությամբ...

Ինչպես հիշում եք նախորդ գրույցից, Կանտը միայն Ծիր Կաթնի տեսքից ելնելով՝ եզրակացրեց, որ այն ունի սկավառակաձև կառուցվածք: Իսկ Վիլյամ Հերշելը, ելնելով իր մանրամասն դիտումների արդյունքներից, ապացուցեց այդ բացատրության իրավացիությունը, հիմնավորեց այն: Հերշելի հաշվարկները գերազանցեցին բոլոր սպասելիքները: Աստղերի ընդհանուր թվի համար ստացվեց մի հսկայական մեծություն 300 միլիոն, որն անզեն աչքով երևացող աստղերի քանակից մեծ էր հիսուն հազար անգամ: Այդ թիվը, որն իրականում խիստ փոքրացված էր, այնքան անսպասելի ու մեծ էր գիտնականի ժամանակակիցների համար, որ նույնիսկ անհավատալի էր թվում:

Այդ ամենից հետո, ունենալով աստղերի թիվը, արդեն կարելի էր հաշվել նաև Գալակտիկայի չափերը: Դրա համար պարզապես հարկավոր էր իմանալ աստղերի միջին հեռավորությունը միմյանցից: Այդ մեծությունը Հերշելի կողմից ընդունվեց հավասար 10 լուսատարու: Նրա հաշվումներից վերջնականապես ստացվեց, որ մեր Գալակտիկայի մեծ տրամագիծը հավասար է 8000 լուսատարվա, այսինքն լույսը Գալակտիկայի մի ծայրից մինչև մյուսը հասնում է ութ հազար տարում:

Ավելի ուշ, արդեն քսաներորդ դարի սկզբներին, նույնանման աշխատանք ձեռնարկեց նաև հոլանդացի աստղագետ Յակոբ Կոռնելիուս Կապտեյնը: Նրա առաջին հաշվարկները Գալակտիկայի տրամագիծը մեծացրին նախ երեք, այնուհետև՝ ևս երկու անգամ: Բաղձալի սահմանը, որին ձգտում էին աստղագետները, աստիճանաբար մոտենում էր, սակայն դեռ դժվար էր նշմարել այն...

Հետաքրքիր է, որ և՛ Հերշելի, և՛ Կապտեյնի մոդելներում Արեգակը գտնըվում էր Գալակտիկայի կենտրոնում, կամ գոնե կենտրոնին շատ մոտ:

---

* Սկիզբը «Պիոներ» №№ 9, 10, 1979 թ.

Այդ տեսակետից վերջին հարվածը հասցրին գնդաձև աստղակույտերը:

Հայտնի են մոտավորապես հարյուր այդպիսի աստղային գոյացություններ, որոնցից ամեն մեկը բաղկացած է հարյուր հազարավոր աստղերից:

Երկնքում գնդաձև աստղակույտերի տարօրինակ բաշխմանն ուշադրություն էր դարձրել դեռ Ջոն Հերշելը՝ մեզ արդեն լավ ծանոթ Հերշել-ավագի որդին: Տարօրինակությունն այն էր, որ նրանք երկնքում համասեռ ձևով չէին սփռված: Ավելին, նրանց մեկ երրորդը գտնվում էր Աղեղնավորի համաստեղությունում, որն իր տիրույթով զբաղեցնում է երկնքի ընդամենը մեկ հիսուներորդ մասը: Արդյո՞ք դա պատահականություն է, թե՞ այստեղ ևս թաքնված է բնության գաղտնիքներից մեկը:

Անցյալ դարի վերջին ամերիկացի աստղագետ Հարլոու Շեպլին կարողացավ պարզել, թե Գալակտիկայում այդ կույտերի տարածական ինչպիսի բաշխման դեպքում երկնքում նման պատկեր կդիտվեր: Երկրաչափական միակ բաշխումը, որն ամեն ինչով համապատասխանում էր դիտումների արդյունքներին, գնդաձևն էր: Իսկ դա նշանակում էր, որ գնդաձև աստղակույտերն իրենց հերթին Գալակտիկայում դասավորված են մի հսկա գնդի ձևով, որը կենտրոնում բավականին մեծ խտություն ունի, իսկ դեպի եզրերն աստիճանաբար նոսրանում է:

Դրանից հետո Շեպլին արեց ամենաբնական եզրահանգությունը, որը կարող էր հետևել այդ ամենից: Այն բխում էր մարդու գլխում առաջին հերթին ծնվող հարցից. տարածության մեջ այդ ի՞նչ բացառիկ կետ է, որի շուրջը կուտակվել են գնդաձև աստղակույտերը: Պատասխանը հետևում է անմիջապես: Գալակտիկայում այդպիսի կետ կարող է լինել միայն և միայն նրա կենտրոնը:

Գալակտիկայի կենտրոնի հայտնաբերմամբ կրկնվեց մի հին պատմություն: Ինչպես չորս հարյուր տարի առաջ կոպերնիկոսյան ժամանակաշրջանում Երկիրն էր դուրս նետվել աշխարհի կենտրոնից, այնպես էլ հիմա Արեգակն իր համակարգի ու մարդկության հետ միասին մղվեց դեպի Գալակտիկայի հեռավոր ծայրամասերից մեկը: Մարդկությունը երկրորդ անգամ զրկվեց տիեզերակենտրոն լինելու պատվից: Այս անգամ, թերևս, վերջնականապես:

Շեպլին՝ Ամերիկայում շարունակելով գնդաձև աստղակույտերի բաշխման հետագա ավելի մանրամասն ուսումնասիրությունը, իսկ Յան Օորտը Հոլանդիայում, օգտվելով Գալակտիկայում աստղերի շարժման առանձնահատկություններից, հաշվեցին Արեգակի հեռավորությունը Գալակտիկայի կենտրոնից: Այդ երկու, իրարից բացարձակապես տարբեր մեթոդները տվեցին նույն արդյունքը, մոտավորապես երեսուն հազար լուսատարի: Այս անգամ հեռավորությունները իսկապես չափվել էին ճշգրտորեն:

Այս աշխատանքներից հետո արդեն դժվար չէր հաշվել Գալակտիկայի չափսերը: Նրա մեծ տրամագիծն հիմա արդեն հասավ 100 հազար լուսատարու: Դա մոտ 23 հազար անգամ ավելի մեծ է, քան Արեգակից մինչև մեզ ամենամոտ աստղի հեռավորությունը: Այդ հսկայական համակարգը, որի կազմի մեջ մտնում են 100 միլիարդ աստղեր, 300 անգամ ավելի, քան հաշվել էր Հերշելը, պտույտ է կատարում իր կենտրոնի շուրջը: Ծայրամասային իր հեռվում այդ շարժմանը մասնակցում է նաև Արեգակն իր համակարգության մոլորակների և մեզ հետ միասին: Արեգակի մեկ լրիվ պտույտը, որը կոչվում է գալակտիկական տարի, տևում է մոտ երկու հարյուր միլիոն երկրային տարի...

Դպրոցականների շարադրություններից

# ԻՄ ՃԱՆԱՉԱԾ ԱՄԵՆԱԼԱՎ ՄԱՐԴԸ...

...իմ տատիկն է: Բարի-բարի, ազնիվ ու միամիտ, անշառ ու անկեղծ: Իմ տատիկը դպրոց ու համալսարան չի ավարտել, ոչ մի օր, ոչ մի ժամ դասի չի նստել: Նա չգիտե, ինչ բան է մաթեմատիկան ու կենդանաբանությունը, չգիտե ինչպես են դասեր պատմում ուսուցիչները: Նրա ուսուցիչը կյանքն է եղել, կյանքի դասերն է նա սովորել:

Իմ տատիկը... Նրա մասին այնքա՜ն շատ բան կարելի է պատմել, այնքա՜ն քնքուշ ու հոգեթով խոսքեր ասել, որ լսողներն էլ սիրեն նրան: Դժվար, շատ դժվար է անցել իմ տատիկի կյանքը: Բայց չի ընկճվել, մնացել է միշտ լավատես ու բարի: Ինձ էլ է այդպես դաստիարակել. չվախենալ դժվարություններից, չխոնարհվել ու գլուխ չկախել, այլ դիմադրել, հաղթահարել, տեսնել միայն լավն ու գեղեցիկը: Երևի դրա համար է, որ իմ տատիկի հոգին շատ է մաքուր: Նա սիրում է բոլոր երեխաներին, բարի է բոլորի նկատմամբ, պատրաստ է օգնելու նրանց:

Երբ ես զայրանում եմ փոքրիկների վրա, տատիկս իրեն հատուկ մեղմությամբ ասում է.

— Չի կարելի զայրանալ, փոքրիկներին պետք է սիրել, հասկացնել, որ իրենք սխալ են, ցույց տալ, թե ճիշտը որն է:

Մեր բոլոր հարևաններն ու ծանոթները հարգում են իմ տատիկին, որովհետև նա իսկապես լավն է:

*ԼԱՐԻՍԱ ԱԲԱՋՅԱՆ*

*Նոյեմբերյանի շրջ., գ. Բերդավան, 8-րդ դաս.*

## Գիտե՞ք որ...

● Բույսերի մեջ ամենաերկարակյացը մեքսիկական կիպարիսն է: Այդ ծառի առանձին տեսակները ապրում են մինչև 10 հազար տարի, կարմրածառի կյանքը անհամեմատ քիչ է, ապրում է 8000 տարի: Եղևնին, բրգաձև սոճին ընդամենը 1000 տարվա կյանք ունեն: Թեև հազվագյուտ, բայց և այնպես՝ կարելի է հանդիպել 800 տարեկան տանձի և բալի ծառերի:

● Արևածաղիկը Եվրոպա է բերվել Մեքսիկայից 16-րդ դարում: Միայն երկու դար հետո նա սկսեց տարածվել Ռուսաստանի հարավային շրջաններում, բայց նրա ձիթատվությունը հայտնի է դարձել միայն 1885 թվին Վորոնեժի մարզի Ալեքսեևկա գյուղի բնակիչ Բակարևի կողմից, որը և պատրաստել է առաջին ճզմիչը յուղ քամելու համար:

● Վրաստանում աճում է ավոկարդո կոչվող ծառը, որն անվանում են նաև կով-ծառ այն պատճառով, որ նրա պտուղները սննդարարությամբ հավասար են մսին, մարսողականությամբ՝ կարագին: 50-ից մինչև 400 գրամի հասնող պտուղները պարունակում են բոլոր հայտնի վիտամինները և 80 տոկոս յուղ:

● Շատերը տեսել են գեղեցիկ կամելիա ծաղիկը, սակայն քչերին է երևի հայտնի, որ այդ բույսը ծառայում է ժամացույցի արդյունաբերությանը: Կամելիայի սերմերից ստանում են գերազանց յուղ, որով յուղում են ժամացույցների մեխանիզմները:

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*Բանասիրության դոկտոր*

## 21. «ԿԱՅՖ ԲՌՆԵԼ», ԿԱՄ՝ ԴՊՐՈՑԱԿԱՆ ԺԱՐԳՈՆԻ ՄԱՍԻՆ

Երևանի դրամատիկական թատրոնում խաղում են Վարդգես Պետրոսյանի «Վերջին ուսուցիչը» պիեսը: Ներկայացման հենց սկզբում գործող անձերից մեկը, 10-րդ դասարանի աշակերտ, ասում է, թե ինչպես իր դասընկերները «կայֆ են բռնել» մի առիթով: Այս դեպքում մեզ հետաքրքրքրողը այդ առիթը չէ, այլ «կայֆ բռնել» արտահայտությունը, որ չգիտես ինչ անիմանալի բավիղներով եկել ու տաքուկ բույն է դրել մեր դպրոցական-ուսանողական ժարգոնում, իսկ Պետրոսյանը, ժամանակակից երիտասարդությանը լավ ճանաչող մի գրող, դրան տեղ է տվել իր պիեսում:

Կայֆ-ն արաբերենից վաղուց ի վեր մեր լեզվին անցած քեֆ բառն է, ունի մի քանի իմաստ՝ խնջույք, կերուխում, հաճույք, վայելք, ցանկություն: Ասում ենք՝ քեֆ անել, քեֆը հարցնել, քեֆը տալ, քեֆին կպչել, իր քեֆին թողնել, քեֆ քաշել և այլն, և այլն: Կարծես այսքան իմաստները բավական չեն՝ երիտասարդները բռնել են կայֆ-ի պոչից:

Ռուսաց լեզվում էլ կա այդ բառը՝ *кейф*, *кейфовать*, որ նշանակում է հաճելի անբանություն, հանգստություն, դուրեկան ժամանց: Հապա որտեղի՞ց հայտնվեց այդ չարաբաստիկ կայֆ-ը: Ուղղակի արաբերենի՞ց, ուր այդ բառն այդպես էլ հնչում է և նշանակում է ոչ այլ ինչ, քան ուրախություն, լավ տրամադրություն: Բայց մի՞թե քեֆ-ը նույն առումները չունի: Իհարկե, ունի: Բայց անկոչ հյուրի պես կայֆ-ը եկել ու նստել է սեղանի գլխին, քեֆ-ը թողել ստվերի մեջ և դարձել դպրոցական ժարգոնի պարտադիր «զարդարանքը»: Հիմա բոլոր պատանիներն ու աղջիկները «կայֆ են բռնում», իսկ նա ով «կայֆ չի բռնում» կամ դրա իմաստը չի հասկանում, դիտվում է որպես կյանքից ետ մնացած, կարեկցանքի արժանի մարդ:

Չպիտի կարծել, թե մեր լեզուն աղավաղում են միայն օտարամուտ բառերը: Ձևախեղման ենթարկվելու կամ տգեղ կիրառության դեպքում լեզուն կարող են աղավաղել նաև մայրենի լեզվի բառերը: Ունենք հստակ, ախորժալուր մի բառ՝ իսկապես: Ասում են անսպասելի մի բան: Լսողը չի հավատում. իսկապե՞ս,— հարցնում է զարմանքով: Հիմա այդպիսի բան չկա, ասում են իսկականից, էլ ավելի հրեշավորը՝ իսկականուց:

Չես էլ հասկանում, թե որտեղի՞ց որտեղ, ի՞նչ տրամաբանությամբ, ո՞ր առավելության իրավունքով այդ խեղված բառը մտել է դպրոցականների,

և ոչ միայն նրանց, լեզվի մեջ ու գրավել իսկապես, իսկական, իրոք որ, իրոք, ճշմարիտ բառերի տեղերը:

Իհարկե, լեզվի, մանավանդ խոսակցականի, մեջ կատարվող ամեն ինչ չէ, որ հնարավոր է պարզաբանել ու բացատրել, բայց կարելի է ենթադրել, որ դա պատեհաբանություն է, անճաշակի մեկը հորինել է, ըստ երևույթին, սուտ-ստից, զուգահեռի տրամաբանությամբ և առաջին գործածումից հետո տարածվել է համաճարակի պես, ինչպես այսպես կոչված, ոաբիս-ի երգերն են տարածվում՝ ավերելով երգային ճշմարիտ մշակույթը: Եվ հիմա, խնդրեմ, կարող եք լսել ամենուրեք՝ ստից կինո, ստից մարդ, ստից է խոսում և այլն, և այլն, իսկ իբրև ստից-ի հակադրություն՝ իսկականից- ը, այն էլ այնպիսի անմիտ-անտեղի կիրառություններով, որ մնում ես ապշած. մեկն ասում է՝ թատրոն եմ գնում, իսկականի՞ց՝ հետևում է հարցումը: Իսկականից լաց եղա, իսկականից եմ խոսում, իսկականից գնացինք, իսկականից տեսանք, իսկականից կերանք, իսկականից լավ մարդ է, իսկականից գործ, իսկականից կայֆ բռնեցինք, իսկականից ծեծ կերանք:

Իսկապես՝ պետք է ծեծ տալ այսքան անճաշակ խոսելու համար:

Հիմա գանք բազմաչարչար արա բառին, որ այնքան ավերմունքներ է գործում դպրոցականների լեզվում: Իհարկե, բառն այստեղ մեղք չունի. դա հայկական ամենաընտիր հատուկ անուններից է, որ գալիս է դեռ հեթանոսական ժամանակներից, Արա Գեղեցիկի և Շամիրամի առասպելից: Դա անել բայի հրամայական ձևն է՝ «Գործըդ ա՚նպես արա, որ ամենքին դուր գա»: Վերջապես, բարբառային համանունություն է՝ աղա-յի, էյ-ի, այ տղայի իմաստով: Ի՞նչ կասկած, այս համանունությունն էլ խոսակցական լեզվում ունի գոյության իրավունք, ո՞վ կարող է առարկել: Բայց առարկություն, ավելին՝ վրդովմունք առաջ բերողը ոչ թե համանունությունն է, այլ դրա համաճարակը (կարծես երևանցի բոլոր տղաների անունն Արա է): Դրա անխնա շահագործումն է ամեն առիթով, հնչական բոլոր գունավորումներով, այն էլ՝ մի նախադասության մեջ երկու անգամ «Արա՛, գնանք, արա՞» (առաջինը կոչ է, երկրորդը՝ համոզող երանգ), «Արա՛, լա՞վ էլի, արա՞» (կոչ և հաշտության երանգ), «Արա՛, ձեռ մի՛ տու, արա՛» (կոչ և սպառնալիք), «Արա՛, չեկար, արա՞» (կոչ և հարցում), «Արա՛, որ ասո՞ւմ էի, արա՛, վայ արա՜» (կոչ և ափսոսանք)... Այսպես հնարավոր բոլոր շեշտերով, և բոլոր դեպքերում՝ տգեղ, անախորժ, բայց, իհարկե, ոչ այսպես խոսողների համար. նրանց ըմբռնումով դա է խոսելու միակ արժանավոր եղանակը: Եվ այս ամենը գրում ենք ոչ այն միամիտ հավատով, թե այս տողերը կարդալուց հետո նրանք մի կողմ կդնեն խոսելու այդ եղանակը, այլ ունենալով այն հույսը, որ մեր պատանի ընթերցողները չեն վարակվի համաճարակով: Չէ՞ որ, ինչպես նկատել են գիտնականները, անմաքուր, տգեղ խոսվածքն իր կնիքն է դնում մարդկային հոգու վրա ևս:

Ասվածն այնքան կարևոր է, որ մեր հաջորդ զրույցը ևս մենք կնվիրենք «դպրոցական ժարգոնին»:

# ԱՄԱՆՈՐՅԱ ՍՈՎՈՐՈՒՅԹՆԵՐ

● Բուլղարացիների մոտ այսպիսի սովորույթ կա. Նոր տարվա սեղանի շուրջ փռշտալը տանը երջանկություն է բերում: Տան տերը փռշտացողին խոստանում է գառնուկ, հորթուկ կամ մտրուկ:

● Հին ժամանակներից գերմանացիների մոտ այսպիսի սովորույթ կա. տղաներն ու տղամարդիկ հավաքվում են որևէ մեկի տանը, գինի կամ գարեջուր են խմում, թուղթ խաղում: Ժամը տասներկուսին բոլորը բարձրանում են սեղանի ու աթոռների վրա և ժամացույցի առաջին հարվածի հետ «թռչում» են Նոր տարի, իսկ հին տարվա ետևից փայտ են նետում:

● Հունգարացիները գտնում են, որ Նոր տարվա նախօրեին չի կարելի ոչխարի կամ թռչունի միս ուտել, այլապես «երջանկությունը ձեռքիցդ թև կառնի կթռչի»: Նոր տարվա նախօրյակին այստեղ միմյանց նվիրում են ծխնելույզ մաքրողի և խոզի ճենապակե արձանիկներ: Գյուղերում հին տարին ճանապարհում են զանգերի ղողանջներով, իսկ Նորը դիմավորում երգերով:

● Բացի բազմազան զվարճություններից, Նոր տարվա նախօրյակին իսպանացիների մոտ բավականին հոգսեր են ծագում. այդ օրը չար ոգին այնքան սանձարձակ է դառնում, որ սովորական միջոցներով նրան դժվար է զսպել: Եվ ահա տոնի նախօրյակին ստիպված են լինում ցանկապատերով փողոցները փակել ու թակարդներ դնել:

# Ա Բ Բ Ա

Մեծ է հանրահայտ ԱԲԲԱ անսամբլի ժողովրդականությունը:

Անսամբլը ստեղծվեց 1972-ին, այնպիսի ժամանակներում, երբ Արևմուտքի երգի շուկա՚ում թագավորում էին մի քանի ակորդանոց պարզունակ մեղեդիները ու աղմուկ-աղաղակը: Նորաստեղծ անսամբլը դրան հակադրեց հաճելի ու անսեթևեթ մեղեդի, սրտամոտ և կյանքի հրատապ հարցերին արձագանքող երգատեքստ, կատարողական բարձր ճաշակ ու վարպետություն, և արդյունքը գերազանցեց բոլոր սպասելիքները: ԱԲԲԱ-ն գտավ իր ունկնդիրների սիրտն ու հոգին տանող ճանապարհը: Այդ իսկ պատճառով էլ, ի տարբերություն աղմկալից, բայց կարճատև հաջողություն ունեցած շատ ուրիշ խմբերի, այս քառյակի ժողովրդականությունը գնալով աճում է:

Երգերի երաժշտությունը գրում է դաշնակահար Բեննի Անդերսոնը: Տեքստերի հեղինակը կիթառահար Բյոռն Ուլվեուսն է: Երգչուհիները՝ Աննեֆրիդ Լինգստադ-Ֆրեդրիկսոնը և Ագնետա Ֆալտսկոգը տիրապետում են բարձր, մաքուր և գեղեցիկ ձայների: Ագնետա—Բյոռն, Բեննի—Աննեֆրիդ՝ այս ամուսնական զույգերի անունների սկզբնատառերից էլ կազմվել է անսամբլի անունը:

ԱԲԲԱ-ի անդամները վերին աստիճանի խստապահանջ են իրենց նկատմամբ: Նրանց յուրաքանչյուր նոր երգ ամիսների քրտնաջան աշխատանքի արդյունքն է: Բեննի Անդերսոնը այդպես էլ ասում է, որ երգի վրա աշխատելիս, իրենք մոռանում են ամեն կարգի հոգնություն:

# 1905 Արդվարդ

Մահ ոչ իմացյալ մահ է, մահ իմացյալ՝ անմահություն

Ըստ ԵՂԻՇԵԻ

## (ԱՐԴՎԱՐԴ



**75** տարի առաջ, հունվարի 9-ին Պետերբուրգում աշխատավորների գնդակոծմամբ սկսվեց համառուսաստանյան 1-ին հեղափոխությունը: Մեկը մյուսին հաջորդեցին մեծ ու փոքր գործադուլներ, ցույցեր, զինված ընդհարումներ և ապստամբություններ: Իբրև հակահարված այս ամենին, պետությունը նախաձեռնեց մի շարք «միջոցառումներ». ոստիկանությունն ու միապետական կազմակերպությունները քրեական տարրերից ու մանր բուրժուազիայի ռեակցիոն շերտերից ստեղծեցին ոճրախմբեր: Սև գործերի պատճառով ժողովուրդը սրանց կոչեց սև հարյուրյակներ:

Սևհարյուրակայիններով ողողվեց և Օդեսան, որի առաջադեմ ուսանողությունն իր մարդասիրաց գործունեությունն առավել զորեղացրեց հեղափոխության, այդ թվում և հրեական ջարդերի օրերին: Սև հարյուրյակների դեմ ելածների, իրենց կյանքը հեղափոխությանը նվիրած հերոսների շարքում էին նաև համալսարանի հայ ուսանողներ՝ Կանայանը, Հարությունյանը, Սարգիսյանը, որոնց անմահացնելու նպատակով արդարատենչ օդեսացիները իսկույն որոշեցին. պատկերները կախել Ունիոն (միություն) դահլիճում, աղոթարաններում նույնիսկ, անուններն էլ ոսկետառ փորագրել համալսարանի մարմարյա պատին:

Այս հերոսներից հատկապես 1-ինի մասին տարբեր աղբյուրներից բավականին նյութ հավաքվեց:

Արդվարդը ծնվել է 1884-ի ապրիլի 1-ին, Երևանյան նահանգի Սուրմալուի գավառի կենտրոն՝ Իգդիրում, Մկրտիչ և Մարիամ Կանայանների տանը: Նրա եղբայրներից երեքը վաղուց հայտնի հասարակական գործիչներ են, գիտության տքնաջան մշակներ: Ստեփան Կանայանը՝ բանասեր-պատմաբան, աշխարհագրագետ, ազգագրագետ, մանկավարժ, Հայաստանի հանրային գրադարանի հիմնադիր: Հայկ Կանայանը՝ ակնաբան-վիրաբույժ, Երևանի համալսարանի բժշկական մասնաճյուղի (1930-ից՝ ինստիտուտ) ակնաբանության ամբիոնի և ակնաբուժական կլինիկայի հիմնադիր: Խաչատուր Կանայանը՝ մանկավարժ, բանասեր-պատմաբան, հայ գրողների լեզվաոճի գիտական ու համաբարբառային ուսումնասիրությունների հիմնադիր:

Արդվարդը սովորել է Երևանի դասական վարժարանում, 1904-ին ավարտել Մոսկվայի Լազարյան ճեմարանը, ընդունվել Օդեսայի համալսարանի իրավաբանության մասնաճյուղ: Ծեմա-

# կիրակի 1980

ԿԱՆԱՅԱՆՑ)

րանում Համազասպ Համբարձումյանի, Վահան Տեր-Գրիգորյանի (Տերյան), Պողոս Մակինցյանի և այլոց հետ 1899-ին կազմել է գրական-հասարակական խմբակ, լույս ընծայել «Ստուդիում» և ուսանողական այլ հանդեսներ: Անցել է սոցիալ-դեմոկրատական կուսակցության շարքերը, ծավալել հակապետական գործունեություն: Մասնակցել է 1905-ի հեղափոխությանը. հրեական ջարդերի օրերին սևհարյուրակայինների դեմ կազմակերպել է ուսանողական ցույցեր և հոկտեմբերի 20-ին, զինված ընդհարման ժամանակ ընկել ոստիկանների գնդակներից: Իշխանությունը վախենալով ժողովրդական նոր հուզումներից, նրա և հեղափոխական ապստամբ ուսանողներ Բայրամովի, Վինկիչի, Ծելուդչենկոյի ու Ծմիդտի աճյունները երկար ժամանակ պահել է բժշկության մասնաճյուղի կլինիկայում ցինկե դագաղների մեջ և թույլ է տվել հուղարկավորել դեկտեմբերի 28-ին միայն: Համալսարանի ուսուցչապետների խորհուրդը որոշել էր այս հերոսներին հողին հանձնել համապատասխան շուքով, բայց նրանց վերջին պատիվ տալը, ստեղծված իրավիճակի պատճառով, հետաձգվեց մինչ շիրմարձաններ կանգնեցնելը:

Նոր ցույցը սակայն անխուսափելի էր: Դագաղները պատած էին կարմիր կտորներով, նրանց վրա դրված էին ալ ժապավեններով ու հեղափոխական մակագրություններով ծաղկեպսակներ, որոնք ուսուցչապետները, ի զգուշություն, թողեցին կլինիկայում:

Հեղափոխության վայրէջքից անմիջապես հետո վրա հասավ ստոլիպինյան ռեակցիան: Սկսվեցին հեղափոխականների, նույնիսկ զոհված հեղափոխականների դատավարությունները: 1908-ի հունվարի 15-ին Օդեսայի մարզային դատարանում «հանուն արդարության» լսվեց «Ուսանող Կանայանցի սպանության գործը»: «Մեղադրվում էին» ոստիկաններ Ա. Ֆեդորովը, Օ. Լեյբինը, քաղաքապահ Ֆ. Մոսկալենկոն: Առավոտյան 11-ին սկսված դատն ավարտվեց երեկոյան 11-ին: Կայսերական արդարադատությունը կարո՞ղ էր արդարացնել հեղափոխականներին...

Կանցնե՛ն տարիներ ու դարեր, բայց սերունդները երբեք չեն մոռանա այն հերոսներին, որոնց արյունը նս նշանակություն ունեցավ հետագա կարմիր, բայց ոչ արյունոտ կիրակիների համար:

Արդվարդ Կանայանցը գրել է բանաստեղծություններ, արել թարգմանություններ, Հ. Համբարձումյանի վկայությամբ արժանացել Կ. Դ. Բալմոնտի, Վ. Յա. Բրյուսովի խրախուսանքին: Նրա գրական կարողությունների մասին մեծ գովեստով է արտահայտվել նաև մեծատաղանդ գրականագետ-տերյանագետ, քաղաքական և հասարակական անվանի գործիչ Պ. Մակինցյանը Վ. Տերյանի 1924-ին լույս տեսած ժողովածվի ներածականում:

*ԺԻՐԱՅՐ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱ-ԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15. Կարմիր բանակի փողոց 15:
Հեռախոսներ՝ 56-82-72, 58-08-88, 56-14-96:

«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

# № 1 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1980



Շապիկի առաջին էջը՝ ԶԱՎԵՆ ՍԱՐԳՍՅԱՆԻ



ՎՖ 05633: Պատվեր 2394: Տպաքանակ 52044: Տպ. 3 մամ.: Թուղթ՝ 70×108 1/16: Հանձնված է արտադրության 24/XII 1979 թ.: Ստորագրված է տպագրության 30/I 1980 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

## ԿՐԿՆԱԿԻ ՀՐԱՎԵՐ

Մի անգամ Էյնշտեյնը՝ մտքերի մեջ խորասուզված, փողոցում հանդիպեց ընկերոջն ու ասաց.

— Երեկոյան ինձ մոտ եկեք, կլինի նաև պրոֆեսոր Ստիմսոնը:

— Ստիմսոնը ես եմ,— տարակուսեց ընկերը:

— Դա կարևոր չէ,— առարկեց Էյնշտեյնը,— միևնույնն է, եկե՛ք:

## ՀԱՆՃԱՐԸ

Գիտական կարիերայի սկզբում մի լրագրող Էյնշտեյնի կնոջը հարցրեց.

— Ի՞նչ կասեք ձեր ամուսնու մասին:

— Իմ ամուսինը հանճար է,— պատասխանեց տիկին Էյնշտեյնը:— Նա կարողանում է ստեղծել բացարձակապես ամեն ինչ, բացի փողից:

## ՄԵԾ ՓԱՌՔԻ ԳԱՂՏՆԻՔԸ

Մի անգամ Ալբերտ Էյնշտեյնի իննամյա որդին՝ Էդուարդը, հարցրեց հորը.

— Հայրի՛կ, ինչի՞ շնորհիվ ես դու այդքան նշանավոր:

Մեծ գիտնականը խընդաց, պատասխանեց.

— Գիտե՞ս ինչ, երբ կույր բզեզը սողում է գնդի մակերեսով, նա չի նկատում, որ իր անցած ճանապարհը կորանում է... Իսկ իմ բախտը բերեց, ես կարողացա նկատել այդ:



# ԺՊԻՏՆԵՐ

## ԾԱՂԻԿՆԵՐ ՀՈԲԵԼՅԱՐԻՆ

Պրոֆեսոր Էյնշտեյնը սովորականի պես տարված էր աշխատանքով: Ասիստենտը դիմեց ղեկավարին.

— Պրոֆեսո՛ր,— ասաց նա անհամարձակ,— բոլոր լրագրերը հաղորդում են, որ այսօր ձեր յոթանասունամյակն է:

— Լավ, լավ,— փընթփընթաց գիտնականը՝ չկտրվելով աշխատանքից:— Բարի եղեք, իմ անունից ծաղկեփունջ ուղարկել:

## ԻՆՔՆԱՍԱՀՄԱՆԱՓԱԿՈ՞ՒՄ

Մի երիտասարդ Էյնշտեյնին հարցրեց.

— Ասացե՛ք, ո՞րն է հաջողության գաղտնիքը:

Էյնշտեյնը թուղթ ու մատիտ վերցրեց, գրեց հետևյալ բանաձևը. $a=x+y+z$:

—«a»-ն այստեղ նշանակում է հաջողություն,—բացատրեց նա:—«y»-ը՝ աշխատասիրություն, «y»-ը՝ բախտ:

— Իսկ ի՞նչ է նշանակում «z»-ը,— հարցրեց երիտասարդը:

— Դա լռելու կարողությունն է:

*«Յուրաքանչյուր հուշարձանին՝ անձնագիր»*



# ՊԱՀՊԱՆԵՆՔ ՄԵՐ ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԸ

## ԽՈՐՎԻՐԱՊ

Գտնվում է Արարատի շրջանում, Արաքս գետի ձախ ափին, բլուրի գագաթին, պատմական Արտաշատի միջնաբերդում:

Խորվիրապը եղել է միջնաբերդի բանտը: Ըստ հնագույն ավանդության հեթանոս աստվածներին պաշտող Տրդատ թագավորը հրամայում է Խորվիրապ նետել Գրիգոր Լուսավորչին, որն առաջին քրիստոնեություն տարածողն էր Հայաստանում: Խորվիրապը մի խոր հոր էր, որտեղ նետում էին հանցագործներին և որտեղ նրանք մեռնում էին սովից, օդի պակասից ու թունավոր օձերի խայթոցներից: Գրիգոր Լուսավորիչը Խորվիրապում մնաց տասներեք տարի: Եվ այդ տարիներին, համաձայն ավանդության, մի այրի կին ամեն օր հաց էր բերում նրան: Տասներեք տարի անց, երբ Տրդատ թագավորը, դարձյալ ըստ ավանդության, իր բազմաթիվ չարագործությունների համար պատժվում է՝ խոզի կերպարանք առնում, Գրիգոր Լուսավորչին հանում են Խորվիրապից, որ նրան բուժի:




Հետագայում Խորվիրապի վրա կառուցվում է եկեղեցի: Հուշարձանախումբը այսօր մեծ խնամքով ու արվեստով վերականգնված է, բայց ինչպես տեսնում եք, նա դարձյալ կարիք ունի բոլորիս ամենօրյա խնամքին և հոգատարությանը:

